ԿՐԹԱՐԱՆ

# ԱՆԳՂԻԱԿԱՆ ԼԵԶՈՒԻ

ՅԱՐՄԱՐԵԱԼ

Ի Հ. ՅԱԿՈԲՈՍ Վ. ԻՍԱՒԵՐԴԵՆՑ

ՏԵՏՐ ԵՐԿՐՈՐԴ

ՎԵՆԵՏԻԿ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1881

ԿՐԹԱՐԱՆ

# ԱՆԳՂԻԱԿԱՆ ԼԵԶՈՒԻ

ՅԱՐՄԱՐԵԱԼ

Ի Հ. ՅԱԿՈԲՈՍ Վ. ԻՍԱՎԵՐՏԵՆՑ






ՎԵՆԵՏԻԿ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1881

ԿՐԹԱՐԱՆ

# ԱՆԳՂԻԱԿԱՆ ԼԵԶՈՒԻ

ՅԱՐՄԱՐԵԱԼ

Ի Հ. ՅԱԿՈԲՈՍ Վ. ԻՍԱՎԵՐՏԵՆՑ






ՎԵՆԵՏԻԿ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1881

# ԴԱՍ ՎԵՇՏԱՍԱՆԵՐՈՐԴ

# LESSON THE SIXTEENTH

## ԿԸ

### Ա Պ Ա Ռ Ն Ի Ն

Առ Անգղիացիս ապառնին բաղադրեալ եղանակ մըն է, ու կը ձեւանայ անորոշ դերբայով, առանց to ի, յառաջադաս ունենալով shall կամ will օժանդակները. առաջինը կը յայտնէ պարտաւորութիւն մը, երկրորդը կամք մը։ Shall օժանդ. կը եզակի ու յոգնակի առաջին դէմքով գործածուելով՝ պարզ ապագայ ըլլալու դէպք մը կը նշանակէ, առանց խօսողին կամ խօսողներուն այն դէպքին նկատմամբ հաստատուն որոշեալ կամք յայտնելու. ասոր հակառակ միւս դէմքերու մէջ shall ը կը յայտնէ խօսողին հաստատուն կամքը կամ հրամանը նկատմամբ այն դէպքին որ իբր ապագայ կը նկատուի։

Ընդհակառակն will օժանդակն առաջին դէմքով՝ խօսողին հաստատուն որոշեալ կամքը կը նշանակէ. անանկ որ խօսողը ապառնի դէպքը կը նկատէ իբր բուն իր կամքէն կախեալ։ Բայց երկրորդ ու երրորդ դէմքով զդէպքը կը ներկայացնէ պարզապէս ինչպէս ապառնի, ու խօսողը ամենեւին կամք մը չի նշանակեր անոր նկատմամբ։ Ուստի անգղիերէնի մէջ երկու տեսակ ապառնի կ'որոշուի. մէյմը պարզ ապառնին, մէյմըն ալ կամք ու հրաման ցուցընող։

Պարզ ապառնին, այսինքն այն տեսակ ապառնին յորում խօսողը ամենեւին որոշում մը չյայտներ և ոչ կամք մը նկատմամբ այն դէպքին որ իբր ապառնի կ'ակնարկէ, կը ձեւանայ'ի կիր առնելով *shall* օժանդակը եզակի ու յոգնակի առաջին դէմքով, և *will* միւս դէմքերով։ Ուստի պարզ ապառնիին ձեւն է այս.

| | | |
|---|---|---|
| I shall go . . | այ շել կօ . | պիտոր երթամ |
| Thou wilt go . | — ուի՛լդ կօ . | պիտոր երթաս |
| He will . . | — ուի՛լ կօ . | պիտոր երթայ |
| We shall go . | ուի շել կօ | պիտոր երթանք |
| You will go . | եու ուի՛լ կօ . | պիտոր երթաք |
| They will go | տհէյ ուի՛լ կօ | պիտոր երթան |
| 2 To stay . . | դու սդէյ . | մնալ, կենալ |
| To set off . . | դու սէդ օֆ . | երթալ, մեկնիլ |
| 15 To set out . . | — — ա՛ուդ . | » » |

Has your tailor brought your coat? He has not yet brought it; he will bring it to morrow. Do you go to the country this summer? We shall go next week, because our mother is unwell. I shall like your brother, if he is as good as you. He will go out after dinner, if the weather is fine. We have invited them to dinner, but they will not come. Why? Because they will stay at home to do their work. When do you set off for London? I think I shall go to London on the twentieth of August. Your niece is a very good child; I think she will receive a fine present from her teacher. I am very glad indeed. I shall stay at home; my father will not allow me to go out, because I have not yet done my English exercise.

61

Կօշկակարը բերա՞ կօշիկները քրոջդ համար։ Դեռ չէ (he has not yet) բերած զանոնք. ըսաւ ինծի թէ պիտոր բերէ զանոնք յաջորդ եօթնեակը։ Ըրի՞ր քու հրահանգներդ։ Դեռ չըրի զանոնք. պիտոր մնամ տունը այս իրիկունը որ (to) ընեմ զանոնք. գո՞հ ես։ Պիտոր ըլլամ գոհ թէ որ զանոնք աղէկ ընես (you will do)։ Հօրեղբօրորդիդ հասե՞ր է։ Պիտոր հասնի վաղը առտու ժամը տասնին։ Կարծեմ պիտոր չհասնի, վասն զի գրեր է ինծի որ անհանգիստ է։ Առաջիկայ կիրակի պիտոր մնանք բոլոր օրը տունը, վասն զի հայրերնիս թոյլ չտար մեզի դուրս ելլելու։ Ո՞ւր է վարժապետդ։ Է՛ 'ի Բարիզ. պիտոր բերէ մեզի շատ մը օգտակար գրքեր։ Ի՞նչպէս է օդը, Ցովհաննէս։ Հիմա օդը գէշ չէ, բայց կարծեմ պիտոր անձրեւէ։ Ան ատեն պիտոր կենամ տունը բոլոր օրը։ Տէրդ տո՞ւնն է։ Ոչ պարոն, դուրս ելաւ այս առտու շատ կանուխ, ու պիտոր դառնայ տասնըմէկ ու կիսուն։

## ԿԹ

Կամք ու հրաման ցուցընող ապառնիին, որ է այն կերպ ապառնիին որով խօսողը իր հաստատուն որոշեալ կամքը կը յայտնէ, կը ձեւանայ will օժանդակը առաջին դէմքով 'ի կիր առնելով, և shall երկրորդ ու երրորդ դէմքով։ Ուստի ասոր ձեւն ալ հետեւեալն է.

I will go . . այ ուիլ կօ . պիտոր երթամ, կ'ուզեմ երթալ

Thou shalt go տհաու շէլդ կօ պիտոր երթաս, կ'ուզեմ որ երթաս, պէտք է որ երթաս

He shall go . հի շէլ կօ . պիտոր երթայ. կ'ուզեմ որ երթայ. պէտք է որ երթայ

We will go . ուի ուիլ կօ . պիտոր երթանք

You shall go . եու շէլ կօ . պիտոր երթաք

They shall go տհէյ շէլ կօ պիտոր երթան

5 13
Wild . . . ուաՙյլտ . . վայրագ. տմար-դի. գոռոզ. հպարտ

The cook . . տհը քուք . խոհակերը

Alone . . . էլօ՛ն . . մինակ, առան-ձին

6
Good for nothing կուտ ֆօ՛ր նըա՛թհինկ անկա-րող, անօգուտ

You shall not go to the coffee-house, I will not allow it; you shall stay at home to do your work. You shall be punished, because you have been idle. He shall not go to the theatre; he is too wild. I will not go to your country; it is too far. You have drunk enough; you shall drink no more. I will allow you to go to your friend's; but you shall not go alone, it is too far. The cook is good for nothing; he shall not stay in my house, he shall go away next Tuesday. I will keep my word; you shall have the books which I have promised you. I will send you the money on Wednesday morning; I can assure you, you shall be paid.

62

Այսօր պիտոր չխաղաս, վասն զի եղար (you have been) շատ դէշ. պիտոր թոյլ տամ քեզի վաղը խաղալու։ Խոհակերը պիտոր կենայ տունը ու աղախինը պիտոր ելլէ դուրս։ Կիրակի պիտոր տամ քեզի դրամն որ խոստացեր եմ քեզի։ Ինքը հրաւիրեր է զիս Ճաշի, բայց ես պիտոր չեր-թամ հօն, վասն զի ինքը կը բնակի շատ հեռու. որդիս պի-

տոր երթայ հոն։ Պիտոր ըսեմ զայդ ուսուցչին, ու դու պիտոր պատժուիս։ Օդը գեղեցիկ է, պիտոր չկենամ տունը, պիտոր ելլամ դուրս չորսին, պիտոր երթամ սրճանոց, ու պիտոր խաղամ սատրինջ բարեկամիս հետ Պ. Ուիչի։ Վաղը կը վճարեմ քեզի (you shall be), ժամը իննին պիտոր ղրկեմ քեզի ստակն որ ես խոստացայ քեզի։

## ԸՆԹԵՐՑՈՒՄՆ

13
God grant a lon*g* lif*e* to Sultan Mahmoud!

513 2 6 54
*W*hilst he rei*g*ns over us, we shall never want

13 56
ruined villages! « You are ri*gh*t », quoth the

6
father of the son; « but we were indifferent to

55
your daughter's fortun*e*; for, though our family

8 5 55
is not so rich as yours, still one may valu*e* one-

76
self on one's possessions ».

### Բառական թարգմանութիւն:

| | |
|---|---|
| God grant a long life . . | Աստուած շնորհէ մեզ երկայն կեանք |
| to Sultan Mahmoud ! . . | սուլթան Մահմուտին, |
| Whilst he reigns . . . | մինչդեռ ինքը կը թագաւորէ |
| over us, . . . . . . | 'ի վերայ մեր, |

| | |
|---|---|
| we shall never want . . | մենք պիտոր երբեք չկարօ-տինք |
| ruined villages! . . . | աւերեալ աւաններու. |
| « You are right, » . . . | « Դուք էք ուղիղ », |
| quoth the father of the son; . . . . . . | ըսաւ հայրն որդւոյն. |
| « but we were indifferent | « բայց մենք էինք անտարբեր |
| to your daughter's fortune; . . . . . . | քու դստերդ օժտին. |
| for, though our family . | վասն զի, թէպէտ մեր ըն-տանիքը |
| is not so rich as yours, . | է ոչ այնչափ ճոխ ինչպէս քուկդ, |
| still one may value oneself | սակայն մէկը կրնայ մեծ հա-մարել ինքզինքը |
| on one's possessions ». . | 'ի վերայ իր ստացուածոց »: |

## Հայերէն թարգմանութիւն:

« Աստուած շնորհէ երկայն կեանք Սուլթան Մահմու-տին: Ցորչափ ինքը կը թագաւորէ մեր վրայ, մենք ոչ երբեք պակսութիւն պիտոր զգանք աւերած աւաններու: — Իրաւ է ըսածդ, պատասխանեց որդւոյն հայրը, սակայն մենք ան-տարբեր էինք դստերդ օժտին. վասն զի թէպէտ և մեր ըն-տանիքը քուկինիդ պէս հարուստ չէ, 'ի վերայ այսր ամե-նայնի կրնայ մէկը իր ունեցածովը պարծիլ»:

## Հ

Հարցական ապառնի աւթով 'ի կիր վարելու է միշտ shall օժանդակը առաջին դէմքով. միւս դէմքերով գործա-ծելու է will օժանդակը երբ կ'ենթադրուի որ ըլլալիք գործը կախումն ունի բուն այն անձին կամքէն. այս պայմանէս դուրս գործածելու է shall: Այսպէս երրորդ դէմքով՝ երբ բանը անանկ գործի մը վրայ ըլլայ որ կ'ենթադրեմ որ գործա-դրուի. պիտի բուն իսկ այս երրորդ անձէն, գործածելու եմ will, և երբ ընդհակառակն ըլլալիք գործը պէտք է աւելի կախումն ունենայ այն անձէն առ որ կը խօսիմ, 'ի կիր ա-ծելու եմ shall:

Այսպէս ծառայից վրայ խօսելով՝ ըսեմ իբր օրինակ. Shall he come to-morrow? ուզելով հասկընալ՝ Կ'ուզես որ ծառայդ վաղը գայ։ Սակայն պէտք է ընդհանրապէս շատ զգուշութեամբ գործածել այս shall ին իմաստը, որ հրամանի նշանակութիւն մը ունենալով՝ կրնայ դիւրաւ արհամարհութեան գաղափար տալ. որով Թէպէտ և հարկ ըլլայ քերականաբար խօսելով գործածել, աղէկ կ'ըլլայ անոր փոխանակ will վարել՝ի կիր, որպէս զի դիմացինին փափուկ զգացմանը դրգիռ չտրուի։

Միով բանիւ իբր ընդհանուր կանոն այս երկու օժանդակներուն կրնանք այսպէս ըսել։

Հարցմանց մէջ shall օժանդակը իրեք դէմքով ալ կրնայ գործածուիլ իմացնելու համար Թէ ի՞նչ է կամքը կամ միտքը այն անձին առ որ կը խօսուի։ Օրինակի աղագաւ shall I write? Գրե՞մ։ Կ'ուզես որ գրեմ։ Ի՞նչ կ'ըսես, գրե՞մ։

Իսկ will օժանդակը ամեն դէմքով ալ կը նշանակէ կամք և դիտաւորութիւն։ Օրինակ. Will you write? Կ'ուզես գրել։ Միտք ունի՞ս գրելու։

| | | |
|---|---|---|
| To forget (9) | դու ֆօրկէ՛դ | մոռնալ |
| The window (5 3, 4) | տհի ուի՛նտօ | պատուհանը |
| To improve (5) | դու իմփրու՛վ | յառաջադիմութիւն ընել |
| The means * (3) | տհը մինզ | միջոցը |
| To throw (4) | դու թհրօ | նետել |
| Thoroughly (6 6) | թհօէ՛րօէլի | (բոլորովին ամբողջապէս, |

* Means բառը միշտ յոգնականապէս 'ի կիր կը վարի. իսկ բայն որու հետ կը համաձայնի միշտ եզակի կը դրուի։

4
The day after to-morrow  տհը տէյ ա՛ֆդըր
5 4.  դու մօ՛րօ  վաղը չէ միւս օր
Before . . .  պիֆօ՛ր . .  առաջ, առջև

13
Short-si*gh*ted  շօրդ սա՛յդէտ  կարճատես

6
German . .  ճօէ՛րմըն .  գերմաներէն,
Գերմանացի
To loan . .  դու լօն . .  փոխ տալ

Loan*e*d . .  լօնտ . . .  փոխ տուած,
փոխ տուի

Shall I learn the English language in a year, if I study two hours a day? I think you will; but if you wish to study it thoroughly, you must study three hours a day. Will you learn English before you learn German? I will learn German before English. Shall your servant go to market? He shall not go to market; he shall stay at home. Have I improved in my studies? You will never improve, because you are too idle. Will you go out before I return? I shall not go out; because it is bad weather. I was there before you, and you did not see me. Are you short-sighted? O yes, very. Shall you go to England? Yes, Sir, because it is the best means to learn the English language thoroughly. When shall you go there? Next year; I shall study some months before with my teacher. You are right. Why is the window open? Because it was warm. If you do not shut it, your child will throw out your books.

Ե՞րբ պիտոր (will) դարձընես ստակը ինծի զոր ես փոխ տուի քեզի։ Պիտոր դարձընեմ քեզի զայն երբ հայրս ղրկելու ըլլայ (will send) ինծի հազար ֆրանքն որ խոստացեր է ինծի հատուցանելու իմ պարտքերս։ Պիտոր (will) երբեք չսորվիս ամբողջապէս անգղիարէն լեզուն եթէ չերթաս Անգղիա։ Լաւագոյն միջոցը ըլլալու երջանիկ (of being) է ընելով բարիք։ Ե՞րբ պիտոր երթաս Գաղղիա։ Պիտոր երթամ Գաղղիա քեզմէ առաջ։ Կ՚ընե՞ս (will you) ինծի այս շնորհքը։ Չեմ կրնար ընել ատիկայ, վասն զի չունիմ ժամանակ։ Պիտոր ժամանակ ունենա՞մ վաղը չէ միւս օր։ Չեմ գիտեր. կը յուսամ պիտոր ժամանակ ունենամ (անկէ) առաջ։ Ինչո՞ւ կը նետես այս թուղթերը պատուհանէն դուրս։ Ինչո՞ւ չես բանար պատուհանը։ Վասն զի շատ ցուրտ է։ Պիտոր նետեմ գլխարկդ պատուհանէն դուրս եթէ չհանես (to take off).

## ՀԱ

Wrong . . րօնկ . . . գէշ, վրիպակ, յանցանք

13

Lively . . լա՛յվլի . . աշխոյժ, վառվռուն, անհանդարտ

6

To run about դու րըա՛ն էպա՛ուդ չորս դին վազել

54 6

To water . . դու ուօ՛դըր . ջուր տալ, ջրել

15. 2

The housemaid տհը հա՛ուզմէյտ սենեկապանուհին

52

The wrong way տհը րօնկ ուէ՛յ ծուռ կամ սխալ ճամբան

4 6
Wholesome . . հօ՛լսըմ . . ողջ, առողջա-րար

2
The maid . . տհը մէյտ . աղջիկը

2
Fair . . . . ֆէյր . . . . տօնավաճառ }

2 3
Cherries . . չէ՛րիզ . . կեռասք

5 2
Wait . . . ուէ՛յդ . . սպասէ

6
Clever . . . քլէ՛վըր . . յաջող, ճար-տար

6
But . . . . պըա՛դ . . միայն

2
Basket . . պա՛սքէդ . կողով

5 4 1 5
Let us walk out . . լէդ ըա՛զ ուօ՛ք ա՛ուդ — դուրս ելլանք

Let us take a walk . լէդ ըազ դէք է ուօ՛ք — ժուռ գանք

Let us go out for a walk. ժուռ գալու երթանք

You shall not go to the coffee-house, I will not allow it; and your brother shall stay at home to do his work. He wishes to walk out after dinner. He always wishes to do things which he is not allowed to do. I will not allow him to run about. Will you allow us, dear Papa, to go to the fair? Yes, I will allow you; but you must not go alone; the servant shall accompany you. These boys are very wild; they shall be punished. Why will you punish them? They have done nothing wrong;

they are only lively. The weather is very mild to-day. Let us take a walk. Yes, let us walk out a little. But where shall we go? Let us go to Mr. White's garden, which is a mile from here. No, I will not go; it is too far. This is the wrong way. The gardener is watering your flowers, Mamma. He shall not water them; go and tell him. Have you got a cook? Yes, we have got a cook and a housemaid; but the maid will not stay in our house. It is very wholesome to drink cold water; but you must not be too warm. You must not drink yet; wait a little before you drink. You shall not drink wine or coffee; it is not wholesome for children. Is your gardener clever? Yes, he is very clever, but his wife is not so clever as he; she always forgets to water the flowers.

## 64

Ո՞վ ըրեր է գէշբան մը։ Մեր դրացիին տղան աղտոտեր է իր շապիկը։ Շատ անհանգարտ տղայ մըն է, պիտի պատժուի, պիտի չերթայ պտըտելու իր ընկերներուն հետ, պիտի մնայ տունը բոլոր օրը։ Յանցանք մը չէ (nothing wrong) ըրած, է միայն քիչ մը անհանգարտ։ Ո՞վ պիտի ջրէ մեր ծաղիկները։ Պարտիզպանը պիտի ջրէ զանոնք։ Ի՞նչ ունիս այդ կողովին մէջ։ Կեռասներ ունիմ զորս հօրեղբօրս վարձուորը բերաւ երէկ կէսօրէն ետքը. կ'ախորժիս ուտել զանոնք. շատ առողջարար պտուղ մըն է։ Ինչո՞ւ համար կը վազես չորս դին բոլոր օրը. ինչո՞ւ համար չես սորվիր. պիտի (will) միշտ ըլլաս անօգուտ մէկ մը, պիտի երբեք չըլլաս յաջող երիտասարդ մը ինչպէս քու եղբայրդ։ Չէ առողջարար շատ ուտել իրիկունը. վաղը պիտի (will) ըլլաս հիւանդ եթէ ուտես այդչափ, սիրելի տղաս։ Մտիկ չըներ (he does not listen) քեզի. շատ անմարդի տղայ մըն է։ Տանիս պիտի (will you take) մեր տղաքը պտըտելու (out for a walk?)։ Պիտոր չտանիմ վասն զի շատ անմարդի են։ Ըլլա՞ս պիտի տունը ժամը վեցին։ Պիտի չկենամ տունը այսօր,

վասն զի օդը շատ մեղմ (mild) է, և ես կ'ախորժիմ ժուռ-գալ երբ օդը այսպէս գեղեցիկ է։

## ԸՆԹԵՐՑՈՒՄՆ

### AN ASTROLOGER AND A KING

An astrologer had foretold to Louis the Eleventh that a lady, whom he esteemed very much, would die in eight days; which having happened, the king ordered the astrologer to be brought to him, and his servants to throw him out of the window, at a given signal. As soon as the king saw him, he said: « You who pretend to the knowledge of future events, and know so exactly the fate of others, tell me: how long have you yourself to live? The astrologer answered: « Sire, I shall die just three days before your Majesty. The king was in no haste to give the signal. »

### Բառական թարգմանութիւն ։

| | |
|---|---|
| An astrologer had foretold . . . . . . . . | Մէկ աղթարմոլ ունէր գուշակած |
| to Louis the Eleventh . | Լուդովիկոս մետասաներորդին |
| that a lady, . . . . . . | թէ մէկ տիկին |
| whom he esteemed very much, . . . . . . . | զոր ինքը կը մեծարէր խիստ շատ, |
| would die in eight days . | պիտի մեռնէր յութ աւուրս, |
| which having happened, | որ ունելով պատահած, |
| the king ordered the astrologer . . . . . . . | թագաւորը հրամայեց աղթարմոլը |
| to be brought to him, . | ըլլալ բերուած իրեն, |
| and his servants to throw him . . . . . . . . | և իր ծառաները նետել զինքը |
| out of the window, . . | դուրս պատուհանէն, |
| at a given signal. . . . | 'ի մէկ տուած նշանի ։ |
| As soon as the king saw him, . . . . . . | Իսկոյն թագաւորը տեսաւ զինքը, |
| he said: « You . . . . | ինքն ըսաւ ։ « Դու |
| who pretend to the knowledge . . . . . . . . | որ կը համարիս 'ի գիտութիւն |
| of future events, and know so exactly . . . . | ապագայ գիտաց, և գիտես այնպէս ճշդիւ |
| the fate of others, . . | ճակատագիրը այլոց, |
| tell me: how long . . . | ըսէ ինծի ։ Ո՞րչափ երկայն |
| have you yourself to live? | ունիս դու դուինքդ ապրիլ » ։ |
| The astrologer answered: | Աղթարմոլը պատասխանեց. |
| Sire, I shall die . . . | « Արքայ, ես պիտի մեռնիմ |
| just three days before . | ճիշդ երեք օր յառաջ |
| your Majesty ». . . . | ձեր վեհափառութիւնը » ։ |
| The king was in no haste | Թագաւորը էր յոչ շտապ |
| to give the signal. . . | տալու զնշանը ։ |

### Հայերէն թարգմանութիւն ։

Աղթարմոլ մը գուշակեր էր Լուդովիկոս ԺԱ, թէ տիկին մը, զոր ինքը շատ կը մեծարէր, ութ օրէ պիտի մեռնէր ։ Այս բանս իրաւցընէ հանդիպելով, թագաւորը հրամայեց

որ աղթարմոլը իրեն բերեն․ իր ծառաներուն ալ ապսպրեց որ նշան մը տուածին պէս զան պատուհանէն դուրս նետեն։ Թագաւորը զինքը տեսածին պէս ըսաւ․ «Դու որ կը համարիս ապագայ ըլլալիքները գիտնալու և այնպէս ճըշդիւ գիտես այլոց ճակատագիրը, ըսէ ինծի, ո՞րչափ ատեն դու ինքդ ապրիս պիտի»։ Աղթարմոլը պատասխանեց․ «Տէր արքայ, ես ճշդիւ ձեր վեհափառութենէն իրեք օր առաջ պիտի մեռնիմ»։ Թագաւորը չշտապեց նշանը տալու։

### Խօսակցութիւն։

What had an astrologer foretold to Louis XI? — By whom was that lady esteemed? — Who had foretold that the lady would die? — What happened after the eight days? — Whom did the king order to be brought before him? — And what did the king order his servants to do? — What did the astrologer pretend to possess? — And what did he pretend to know? — What did the king say to him? — What did the astrologer answer? — Did the king give the signal? —

### Ընտանեկան խօսակցութիւն։

| ԹՂԹԱՏԱՐԸ | THE POST |
|---|---|
| Թղթատարը երբ կը մեկնի։ | When does the post leave? |
| Ամեն օր ժամը վեց ու կիսուն։ | Every day at half-past six. |
| Դուրս ղրկելու նամակ ունի՞ս։ | Have you any letters to send away? |
| Այո, երկու հատ ունիմ։ | Yes, I have two. |
| Կորսնցնելու ժամանակ չունիս, վասն զի արդէն շատ ուշ է։ | You have no time to spare, for it is too late already. |
| Շատ չեմ ուշանար։ | I shall not be long. |
| Միայն հասցէն ունիմ գրելու։ | I have only the direction to write. |
| Շնորհք ըրէ նշխարք մը տուր։ | Give me a wafer, if you please. |

| | |
|---|---|
| Սա գիրը նամակատունը տար։ | Carry this letter to the post-office. |
| Շուտ ըրէ։ | Make haste. |
| Կրնա՞ս ըսել ինծի ուսկից կ'երթըցուի նամակատունը։ | Can you tell me the way to the post-office? |
| Թղթաբերը անմիջապէս հիմա հասաւ։ | The mail is just come in. |
| Գնա՛ շուտ մը նամակներս առ բեր։ | Go immediately and bring my letters. |
| Դեռ ևս չեն բաշխեր։ | They do not give them out yet. |

## ԴԱՍ ԵՕԹՆԵՒՏԱՍՆԵՐՈՐԴ

## LESSON THE SEVENTEENTH

### ՀԲ

*Անկանոն յոգնակի ունեցող անուններ.*

| Եզակի | | | Յոգնակի | | |
|---|---|---|---|---|---|
| Die [13] | տայ | քուէ (խաղի) | Dice [13] [3] | տայս | քուէք |
| Tooth | թութհ | ակռայ | Teeth | թիթհ | ակռաներ |
| Ox | օքզ | եզ | Oxen [3] | օ́քզըն | եզներ |
| Foot | ֆուդ | ոտք | Feet | ֆիդ | ոտքեր |
| Penny | փէնի | (դրամ) | Pence [3] | փէնս | բէնիներ |
| Goose [4] | կուս | սագ | Geese | կիս | սագեր |

False [4] . . . ֆօլս . . . սուտ

Grass . . . կրաս . . . խոտ

To cost . . դու քօսդ . արժել

You had better [2] եու հէտ պէ'դըր լաւ ես կ'ընէիր

Hay . . . հէյ . . . խար, անասնոց չոր խոտ

That young lady has beautiful teeth, but her feet are ugly. How much did that pen cost you? Four pence. It is very dear; mine is finer than yours, and costs only two pence. What do oxen eat? They eat grass and hay. Who is that lady? Which? She who is speaking with your brother's teacher. She is our aunt's friend; she has false teeth. I don't believe you. Do you like to play at dice? I prefer to play at chess. There are many oxen in these fields. What are you doing there? I am playing at dice. You had better [1] write your English exercises.

### 65

*Եզներն են շատ օգտակար կենդանիներ, աւելի օգտակար են քան ձիերը։ Տուէք խոտը եզներուն։ Այս պարոն ու կերան զայն ամբողջ։ Այս եզը շատ գէր է, շատ խոտ կ'ուտէ։ Փոխ տուր ինծի քուէդ, խնդրեմ։ Ի՞նչ կ'ուզես ընել անով* (with it)։ *Կ'ուզեմ քուէ խաղալ Կուատեռու'մըր բարեկամիս հետ։ Լաւ եւս կ'ընես դասդ սորվիս։ Ձեռ կըրնար, ակռայի ցաւ* (toothache) *ունիմ։ Ո՞րչափ բէնիներ տուեր ես պզտիկ Ռուբէնին։ Տուեր եմ իրեն հինգ բէնի։ Լաւ եւս կ'ընէիր տալ իրեն աղէկ գրքեր։*

### ՀԳ.

*Միայն յոգնակականաբար գործածուած անուններ*

| | | |
|---|---|---|
| Snuffers . . | սնըֆըրս . | *պատրոյգահատ* |
| Scissors * . | սի'զօրս . | *մկրատ* |

1 You had better *խօսքին տեղէն եկող անորոշ դերբային* to *մասնիկը կը զեղչուի։*

* *Երբ ուզէ մէկը այս կրկին մասերով բաղկացեալ առարկայից միութիւն մը նշանակել, 'ի կիր ածելու է* pair (*բէյր*) *բառը։*

| | | |
|---|---|---|
| Tongs . . . | դօնզ . . . | ունելիք (կրակի) |
| Bellows . . | պէ՛լըս . . | փուքք (կրակի արծարծիչ) |
| Trowsers . . | դրա՛ուզըրզ | անդրավարտիք |
| Kitchen . . | քի՛չըն . . | խոհակերոց |
| To look for . | դուշ լուք ֆօր | փնտռել (բան մը) |
| To blow . . | դուշ պլօ . . | փչել |
| At last . . | էդ լաստ . | վերջապէս |
| Too . . . . | դու . . . | նաև |

Give me the tongs, if you please. Where are they? In the kitchen, and the bellows too. Those trowsers are too large; I will not buy them. For whom have you bought that pair of scissors? For Mrs. Shop, who wants them. Mary, bring the snuffers, if you please. I cannot find them. What are you looking for? I am looking for the bellows. What do you wish to do with them? To blow the fire. John, what are you doing in the kitchen? I am looking for the tongs and the bellows. The bellows are here; I am blowing the fire with them.

66

Սիրելի մայրս, պէտք ունիմ (a pair) մկրատի մը։ Ահաւասիկ երկու ֆրանք գնելու զայն։ Ի՞նչ բան քու աղախինդ փնտռելու հետ է։ Փուքը փնտռելու հետ է կրակը հովահարելու համար։ Տեսայ զայն խոհակերոցը։ Նե-

րումն կը խնդրեմ պարոն, խոհակերոցը կամ պատրոյգա-հատը և ունելիքը, բայց ոչ փուքը։ Ահաւասիկ հոս է, վերջապէս գտայ զայն։ Դերձակը բերեր է քու անդրավարտիքը, կը հարցընէ երբ պիտոր վճարես իրեն։ Երբ գայ, ըսէ իրեն (you shall tell him) չեմ հաւնիր այս անդրավարտիքը, և թէ պիտոր վճարեմ իրեն երբ բերէ ինծի ուրիշ (զոյգ) մը։

## ՀԴ

Իբր ընդհանուր կանոն՝ ածականները ոչ երբեք 'ի կիր կ'առնուին գոյականաբար, որով չկրնար զուրցուիլ a young ուզելով հասկցընել երիտասարդ մարդ մը, հապա ըսելու է a young man. Սակայն երբ ուզենանք նշանակել շատ մը անհատներու խումբ մը՝ 'ի կիր ածելու ենք ածական անունը գոյականաբար. այսպէս կրնանք ըսել the rich հարուստները, որ չնշանակեր այս կամ այն հարուստները, հապա ընդհանուր առմամբ բոլոր հարուստները։ Այսու նկատմամբ գիտելու է որ ածականը իբր գոյական գործածուելով անփոփոխ կը մնայ նաև յոգնակին մէջ։

| | | |
|---|---|---|
| Every one . | է'վըրի ուը'ն | իւրաքանչիւր ոք, ամեն մարդ |
| 13 Idleness . . | այ'յտըլնէս . | ծուլութիւն |
| 13 Vice . . . | վայս . . | ախտ |
| 2 Hated . . . | հէ'յդէտ . . | ատեցեալ |
| 3 13 Despised . . | տիսփա'յզտ | արհամարհեալ |
| Pocket . . | փօ'քէդ . . | գրպան |

The rich have sometimes more misfortunes than the poor. The idle are always poor and unhappy, because

**idleness is the greatest of all vices. The good are loved and praised by every one; and the bad are hated and despised. You are hated, because you are a vicious fellow. He is loved by every one, because he has no vices. He who is happy, is also good; but not all the good are always happy. Am I despised? No, you are praised because you are good and learned. What have you in your pocket? I have nothing in it.**

**67**

*Ծոյլերը արհամարհեալ են բարիներէն։ Աղքատները քիչ բարեկամ ունին։ Այն տղան կը գովուի ամեն մարդէ որ զինքը կը ճանչնայ. շատ բարեկամներ ունի որ կը սիրեն զինքը խիստ շատ։ Դու շատ ախտեր ունիս, սիրելիս, դու պիտոր* (will) *միշտ ըլլաս թշուառ։ Իրաւ չէ, չունիմ ախտեր, միայն աւելի խաղ կը սիրեմ քան թէ ուսումը։ Գէշերը ատեցեալ են և արհամարհեալ։ Ո՞րչափ բէնիներ ունիս գրպանդ։ Ունիմ տասնըութ։ Ի՞նչ պիտոր ընես անոնցմով։ Բան մը պիտոր գնեմ իմ բարի քրոջս համար։*

## ԸՆԹԵՐՑՈՒՄՆ

« They were goin*g* on, » concluded the vizier, « pridin*g* themselv*es* on their condition and exultin*g* over the devastation, which, they pretend, is spreadin*g* itself more and more every day. But, as you were waiting for me, I durst not remain longer; for I thou*gh*t you

might grow impatient, and you know how much I fear to displease you. »

### Բառական թարգմանութիւն։

| | |
|---|---|
| « They were going on, » | «Անոնք էին երթալով յա-ռաջ, » |
| concluded the vizier . . | աւարտեց ըսել վեզիրը, |
| « priding themselves . . | « պարծեցընելով իրենք զի-րենք |
| on their condition . . . | 'ի վերայ իրենց վիճակին, |
| and exulting . . . . | և ուրախանալով |
| over the devastation, . | 'ի վերայ աւերածութեան, |
| which, they pretend, . . | որ, իրենք կը համարին, |
| is spreading itself . . . | է տարածելով ինքզինքը |
| more and more every day | աւելի և աւելի իւրաքան-չիւր օր։ |
| But, as you were waiting for me, . . . . . | Բայց, ինչպէս դուք էիք սպա-սելով վասն ինծի, |
| I durst not remain longer; | ես համարձակեցայ ոչ մնալ աւելի երկայն. |
| for I thought . . . . | վասն զի ես մտածեցի |
| you might grow impatient, | դուք կրնայիք անձիլ անհամ-բեր, |
| and you know . . . . | և դուք գիտէք |
| how much I fear . . . | որչափ ես կը վախնամ |
| to displease you. » . . | անհաճոյ ըլլալ ձեզի։ » |

### Հայերէն թարգմանութիւն։

Վեզիրը խօսքը վերջացընելով ըսաւ. « Խօսքերնին յառաջ կը տանէին, իրենց վիճակին վրայ պարծենալով, և ուրախանալով աւերածութեանը վրայ, որ, ինչպէս իրենք կը համարին, օրէ օր տարածուելու հետ է։ Բայց որովհետև դուք ինծի կը սպասէիք, չհամարձակեցայ աւելի ուշանալ, մտածելով որ չըլլայ թէ համբերութիւննիդ հատնի. վասն զի գիտէք թէ որչափ կը վախնամ ձեզի անհաճոյ ըլլալու »։

Հե

2
To taste . . դու դէ՛յսդ . Ճաշակել, համը առնուլ

3 76
Delicious . . տիլի՛շօէս . քաղցրահամ

8 3
Cherries . . չէ՛րիս . . կեռասք

6
Plums . . . փլըամս . սալորք

2
Apricots . . է՛փրիքօդս ծիրանք

6
Nuts . . . նըադս . . ընկոյզք

6 54
Afterwards . ա՛ֆդըրուօրտզ ետքը

2
Scarce . . . սքէ՛րս . . հազիւ, նուազ

To *k*nock . . դու նօք . . զարնել

To open . . դու օ՛փն . բանալ

Our farmer's daughter has sent us a basket of cherries, which are very good; do you wish to taste them? No, thank you; I do not like cherries. What sorts of fruit do you like? I like plums, nuts and apricots. These plums are delicious! Waiter, have you any cherries? I beg your pardon, Sir, it is not the season now. Well then, bring us some nuts and plums, and afterwards bring some cheese and butter. I shall bring you only the cheese, because the butter is bad. Have

you tasted my wine? It is delicious. Somebody knocks. Who is there? It is I, please to open; I do not like to wait here, it is very cold.

## ՀՁ

There[2] . . . տհէր . . . հոն

Thither[6] * . . տհի՛տհըր . հոն

Were you there? ուէ՛ր եու տհէր էի՞ր հոն

Do you think of it? տու՞ եու թինք օվ իդ ա-տոր վըրայ կը մտածե՞ս

To be at a loss դու պի էդ է լօս չգիտնալ ինչ-պէս ընել, շփոթած ըլլալ

To charge . դու չարճ . պարտաւորել, վճարել տալ

The intention[76] տհի ինդէ՛նշըն դիտաւորու-թիւնը

To hunt[6] . . դու հըա՛նդ որսի երթալ

Do your children wish to go into my garden? They do not. When were you in Paris? I was there last year. When do you go there? Next week. Do you think of your debts? I always think of them, and I will pay them. I am at a loss how to pass the evening. Let us go to the theatre. How much do you charge me for this apartment? Thirty francs a month. He was at a loss to know

* Ըստ կանոնի there գործածելու է հանգիստ ցուցը-նելու համար՝ և thither շարժմունք. բայց այս կանոնը խըս-տիւ՛ն կէր չպահուիր, որով մէկը միւսին տեղ ալ կը գործածուի։

your intention. Were you at the ball last Sunday? No, Sir, I go there next Saturday. When will you send your servant to my bookseller's? I will send him to-morrow.

68

Չեմ գիտեր ինչպէս ընեմ գտնելու համար աղէկ ուսուցիչ մը. ունէի մէկ մը, ինծի շատ վճարել կու տար։ Ե՞րբ կ'երթաս որսի։ Վաղը. կ'ուզես երթալ դու ալ։ Շնորհակալ եմ. չեմ սիրեր որսորդութիւն (hunting). կը մաղթեմ քեզի բարի զուարճութիւն (good sport)։ Ո՞րչափ պիտոր հատուցանեմ (do you charge me) վասն այս (զոյգ) անդրավարտիքի։ Տասնըվեց Ֆրանք։ Ինչու համար չես երթար գեղը այս տարի։ Վասն զի չեմ գիտեր ինչպէս ընեմ գտնելու աղէկ տուն մը։ Ես ունիմ մէկ մը որ շատ գեղեցիկ է։ Ո՞րչափ վճարել կու տան քեզի։ Յիսուն Ֆրանք առ ամիս։ Պիտոր գրեմ նամակ մը Յովհաննէսին հօրը, բայց չեմ գիտեր ինչպէս ընեմ (how) ղրկելու զայն։

Հէ

Madam . . մէ'տըմ կամ մէ'էմ տիկին

Lad . . . լէա'տ . . պատանի, մանչ

Hare (2) . . . հէյր . . . նապաստակ

Game (2) . . . կէյմ . . . վայրի որս

Partridge . . փա'րդրիճ . կաքաւ

Hunter (6) . . հըա'նդըր . որսորդ

To go out shooting դու կօ ա'ուդ շուդինկ որսորդութեան երթալ

| | | |
|---|---|---|
| To go out hunting — — | ճըա'ճղիճկ | որսորդութեան երթալ |
| By chance . | պայ չէա'ճս | ըստ պատահման, գիպուածով |
| The fashion . | տճր ֆէա'շըճ | սովորութիւնը, նորաձեւութիւնը |
| Nor I either . | ճօր այ ի'տճըր | և ոչ իսկ ես |
| To be fond of | դու պի ֆօճտ օվ | շատ սիրել, հաճիլ |
| Is going to be married | իզ կօ'իճկ դու պի մէա'րիտ | կարգուելու վրայ է |
| To marry one | դու մէա'րի ուըր'ճ | մէկին մը հետ կարգուիլ |
| It is said . . | իդ իզ սէտ . | կ'ըսեն, կ'ըսուի |
| They say . . | տհէյ սէյ . | կ'ըսեն, կ'ըսուի |
| To carry . . | դու քէ'րի . | բերել |
| To bring . . | դու պրիճկ . | բերել |
| Sort . . . | սօրդ . . . | տեսակ |

Good morning, Madam, how is your health? Well, thank you; sit down. What is the news? It is said the watchmaker's daughter, that pretty girl with whom you danced last evening at my uncle's, is going to be married. Indeed! And whom does she marry? A rich tra-

veller. Where is Mr. Wooden, Madam? He is gone out shooting; you know he is very fond of hunting. Is he a good hunter? Yes, Sir, very; the day before yesterday he brought home a hare and some partridges. Are you fond of game? Not very. Nor I either. What does that lad carry in that basket? He is carrying some partridges. Who has sent them to you? A hunter whom I do not know. If by chance you see my friend, please to tell him that I will wait on him at half-past seven. Do you like my new coat? I do not like it, but I know it is the fashion.

69

Տիկին, պատիւ ունիմ բերելու ձեզի քիչ մը վայրի որս, զոր բարեկամս Յովհաննէս, որ է մեծ որսորդ մը, կը ղրկէ ձեզի։ Ի՞նչ տեսակ վայրի որս կը ղրկէ ինծի։ Նապաստակներ։ Կ'ախորժի՞ք կաքաւներ։ Շնորհակալ եմ, բայց չեմ ախորժիր վայրի որս։ Կ'ըսեն թէ շատ կը սիրես որսորդութիւն, իրա՞ւ է։ Իրաւ է, վասն զի նորաձեւութիւն է ըլլալ որսորդ։ Կ'ըսուի թէ այն պատանին պիտոր երթայ Գաղղիա գաղղիարէն աղէկ սորվելու։ Չեմ հաւատար ատիկայ։ Եւ ոչ իսկ ես կը հաւատամ. ինքը խիստ շատ կը սիրէ իր ծնողքը և չերթար (will not go) հեռու անոնցմէ։ Եթէ պատահմամբ կենաս երկայն ատեն Բարիզ, շնորհք ըրէ, գրելու ինծի շատ ստէպ։ Ընեմ պիտի այդպէս։ Կը սիրե՞ս ճամբորդութիւն ընել։ Չեմ սիրեր. (I am not)։ Եւ ոչ իսկ ես. աւելի կը սիրեմ (I prefer) կենալ իմ քաղաքս ուր ունիմ շատ բարեկամներ։ Տիկին, ճշմարիտ է որ կարգուելու վրայ ես։ Այո Պարոն, կը կարգուիմ քու բարեկամ Պր. Շօրդին հետ։

## ԸՆԹԵՐՑՈՒՄՆ

### THE DOUBLE LESSON

Swift, it is said, was not very generous; he seldom gave any thing to the servants of those who sent him presents; but he once received a good lesson from a lad, who very often carried him hares, partridges and other game. One day the boy arrived with a pretty heavy basket, containing fish, fruit, and game; he *k*nocked at the door, and the Dean, by chance, op*e*ne*d* it himself. « Here, » said the boy, gruffly, « my master has sent you a basket full of things. » Swift, feeling himself displeased at the boy's rud*e* manner, said to him: « Come her*e*, my lad, and I will teach you how to deliver a messag*e* a little more polit*e*ly; come, imagin*e*

yourself Dean Swift, and I will be the boy. »

Then taking off his hat very politely, and addressing[2] himself to the lad he said: « Sir, my master[6] sends you a little present, and begs[2] you will do him the honour to accept[2] it. » « Oh, very well, my boy, » replied the lad, « tell your master I am much[13] obliged to him, and there is half-a-crown[15] for yourself. »

*Բառական թարգմանութիւն:*

| | |
|---|---|
| Swift, it is said, . . . | Սուիֆդ կ'ըսուի, |
| was not very generous; | էր ոչ շատ առատաձեռն. |
| he seldom gave any thing | ինքը հազիւ երբեք կու տար մէկ բան |
| to the servants of those . | ծառայից անոնց |
| who sent him presents; . | որ կը ղրկէին իրեն ընծաները. |
| but he once received . | բայց ինքը անգամ մը ընդունեց |
| a good lesson from a lad, | մէկ աղէկ դաս 'ի մէկ պատանեկէ, |
| who very often carried him hares, . . . . | որ շատ ստէպ կը բերէր իրեն նապաստակներ, |
| partridges and other game. | կաքաւներ և ուրիշ որսական: |
| One day the boy arrived | Մէկ օր մանչը հասաւ |
| with a pretty heavy basket, . . . . . | մէկ աղէկ ծանր կողովով. |

| | |
|---|---|
| containing fish, fruit, and game; . . . . . . | բովանդակելով, ձուկ պըտուղ, և որսական, |
| he knocked at the door, | ինքը զարկաւ դրան |
| and the Dean, by chance, | և Նախերեցը պատահմամբ |
| opened it himself. . . . | բացաւ զայն նոյն ինքն: |
| « Here, » said the boy, gruffly, . . . . . | « Հոս, » ըսաւ մանչը խստաբար, |
| « my master has sent you | « իմ տէրս ունի ղրկած քեզի |
| a basket full of things. » | մէկ կողովլի բաներով »: |
| Swift, feeling himself displeased . . . . . | Սուիֆդ զգալով ինքզինքը անհաճ |
| at the boy's rude manner, | 'ի վերայ մանչին կոպիտ կերպին, |
| said to him: « Come here, my lad, . . . . . | ըսաւ անոր. « Եկուր հոս, իմ պատանիս, |
| and I will teach you . . | և ես կ'ուզեմ սորվեցնել քեզի |
| how to deliver a message | ինչպէս աւանդել մէկ պատգամաւորութիւն |
| a little more politely; . | մէկ քիչ աւելի քաղաքավարաբար. |
| come, imagine yourself . | եկուր, երևակայէ ինքզինքդ |
| Dean Swift, . . . . . | Նախերեց Սուիֆդ. |
| and I will be the boy. » . | և ես պիտոր ըլլամ մանչը »: |
| Then taking off his hat | Յետոյ առնելով 'ի բաց իր գլխարկը |
| very politely, . . . . | շատ քաղաքավարաբար |
| and addressing himself . | և ուղղելով ինքզինքը |
| to the lad he said: . . | պատանիին ինքն ըսաւ. |
| « Sir, my master sends you . . . . . . . | « Տէր, իմ տէրս կը ղրկէ ձեզի |
| a little present, and begs | մէկ փոքր ընծայ, և կը խնդրէ |
| you will do him . . . | դուք ուզէք ընել իրեն |
| the honour to accept it. » | պատիւը ընդունելու զայն: |
| « Oh, very well, my boy, ». | « Օ՛, շատ աղէկ, իմ տղաս, » |
| replied the lad, . . . | կրկնեց պատանին. |
| « tell your master . . . | « ըսէ քու տիրոջդ |
| I am much obliged to him, | ես եմ շատ պարտական իրեն, |
| and there is half-a-crown for yourself. » . . . | և հոն է կէս մէկ քրաւնի վասն քո անձին »: |

## Հայերէն թարգմանութիւն:

Կ'ըսեն թէ Սուիֆդ շատ առատաձեռն չէր. իրեն ընծայ զրկողներուն ծառայից շատ քիչ անգամ բան մը կու տար. բայց ինքն ալ անգամ մը աղէկ դաս մը ընդունեցաւ պատանեկէ մը՝ որ շատ անգամ բերեր էր իրեն նապաստակներ, կաքաւներ և ուրիշ որսական: Մէկ օր մը պատանին կը հասնի բաւականապէս ծանր կողովով մը որու մէջ կար ձուկ, պտուղ և որսական. դուռը կը զարնէ և գիպուածը կը բերէ որ նոյն իսկ Նախերէցը դուռը բանայ: — «Ահա, ըսաւ պատանին խիստ կերպով մը, տէրս քեզի լի բաներով կողով մը կը զրկէ»: — Սուիֆդ պատանւոյն կոպիտ կերպէն տհաճելով՝ կ'ըսէ. — «Հոս եկուր տղաս, քեզի կ'ուզեմ սորվեցնել ինչպէս քիչ մը աւելի քաղաքավարութեամբ մատուցանելու ես պատգամաւորութիւնդ. եկուր, համարէ թէ Սուիֆդ Նախերէցը դու ես, ու ես ըլլամ մանչը»: — Յետոյ վայելուչ կերպով մը գլխարկը վար առնելով, ու խօսքը մանչուն ուղղելով՝ ըսաւ. — «Պարոն, տէրս ձեզի պզտի ընծայ մը կը զրկէ, և կը խնդրէ որ իրեն շնորհք ընէք ընդունիք: — Շատ աղէկ, տղաս, կը պատասխանէ մանչը, ըսէ տիրոջդ որ շատ շնորհակալ եմ, և ահա քեզի համար ալ կէս ֆրանք»:

## Խօսակցութիւն:

Ի՞նչ կը զրուցուի Սուիֆդին նկատմամբ: — To whom did he seldom give any thing? — What did he receive once? — From whom did he receive a good lesson? — With what did the lad arrive one day? — What did the basket contaiu? — What did he do? — Who opened the door? — What did the boy say? — How did he say it? — Ի՞նչ բանի վրայ տհաճեցաւ Սուիֆդ: — Ի՞նչ բան կ'ուզէր Սուիֆդ սորվեցնել անոր: — Ի՞նչ բան պիտոր համարէր պատանին: — What did Swift do? — To whom did he address himself? — What did he say then? — What did the lad reply?

## Ընտանեկան խօսակցութիւն։

| ՍՊԱՍԱՒՈՐ ՄԸ ԾԱՌԱՅՈՒԹԵԱՆ ԱՌՆՈՒԼ։ | ENGAGING A SERVANT. |
| --- | --- |
| Վերջերս ի՞նչ մարդու ծառայեցիր։ | Whom did you serve last? |
| Մէկ ազնուական մարդու մը ծառայեցի որ վերջի եօթնեակը քաղաքս թողուց Ամերիկա երթալու համար։ | I served a gentleman who left this place for America last week. |
| Ո՞րչափ ատեն ծառայեցիր իրեն։ | How long did you remain in his service? |
| Վերջի իրեք ամիսն որ այս քաղաքս էր ծառայեցի իրեն։ | I served him during the three months he was in this town. |
| Խմելու ախտը ունի՞ս։ | Are you given to drinking? |
| Գաւաթ մը գինի սիրով կը խմեմ, բայց ոչ երբեք կը գինովնամ։ | I like a glass of wine very well, but I never get drunk. |
| Քանի՞ տարեկան կաս։ | How old are you? |
| Երեսունուհինգ տարուան կամ։ | I am thirty-five years old, Sir. |
| Կարգուած ես։ | Are you married? |
| Չէ, Պարոն. ինծի պէս մէկ մը որ աստանդական կեանք մը կը վարէ, երբեք կարգուելու չէ։ | No, Sir; a man, who, like me, always keeps moving, should never marry. |
| Ո՞րչափ վճարք կը պահանջես։ | What wages do you ask? |
| Հինգ ֆրանք օրը։ | Five francs a day. |
| Պէտք է ըսեմ քեզի 'ի սկզբան, որ եթէ քեզ ծառայութեանս մէջ առնում, ճշգիւ կատարելու ես հրամաններս. և եթէ հանդիպի որ գինովնաս, իսկոյն քեզ ծառայութենէս կը հանեմ։ | I must tell you beforehand, that if I take you into my service, you must be exact in the execution of my orders; and if you happen to get drunk, I shall discharge you at once. |

| | |
|---|---|
| Բոլոր իմ տէրերս միշտ գոհ եղած են իմ ծառայութե-նէս. կը յուսամ որ դու ալ Պարոն գոհ կ՚ըլլաս։ | My masters have always been satisfied with my services, and I hope you will be so too, Sir. |
| Շատ աղէկ. ուրեմն վաղը նորէն հոս դարձիր։ | Very well; then retunr here to-morrow. |

# ԴԱՍ ՈՒԹԵՒՏԱՍՆԵՐՈՐԴ

## LESSON THE EIGHTEENTH

## ԺԸ

### ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ

*Should* shall *օժանդակին անցեալը, և* *would* will *ին անցեալը, բայց երբեմն անորոշ դերբային յարուելով՝ անոնց պայմանականը շինելու կը ծառայեն:*

Should *առաջին դէմքերուն մէջ կը գործածուի և* would *միւս դէմքերուն մէջ, ուզելով նշանակել գործ մը իբր ուրիշ գործի հետեւանք, բայց առանց անոր նկատմամբ խօսողը՝ կամք մը յայտնելու: Այս կերպ պայմանականը կը համապատասխանէ պարզ ապառնիին, ու կ՚ըսուի պարզ պայմանական, որուն ձեւն է հետեւեալը:*

| | | |
|---|---|---|
| I should write, | *կը գրէի* | *կամ պիտի գրէի, գրելու էի* |
| Thou wouldst write, | *կը գրէիր* | *կամ պիտի գրէիր, — էիր* |
| He would write, | *կը գրէր* | *կամ պիտի գրէր, — էր* |
| We should write, | *կը գրէինք* | *կամ պիտի գրէինք, — էինք* |
| You would write, | *կը գրէիք* | *կամ պիտի գրէիք, — էիք* |
| They would write, | *կը գրէին* | *կամ պիտի գրէին, — էին* |

*Հարցական պարզ պայմանականին ձեւն է հետեւեալը:*

| | |
|---|---|
| Should I write? . . . | *կը գրէ՞ի ես* |
| Shouldst thou write? . . | *կը գրէ՞իր դուն* |
| Would he write? . . . | *կը գրէ՞ր ինքը* |
| Should we write? . . . | *կը գրէ՞ինք մենք* |
| Should you write ? . . | *կը գրէ՞իք դուք* |
| Would they write ? . . | *կը գրէ՞ին անոնք* |

Ընդհակառակն երբ խօսողը իր կամքը կը յայտնէ գործի մը նկատմամբ որ միտքը դրած է թէ պիտոր պատահի իբր որոշեալ պայմանի մը հետեւանք, առաջին դէմքին մէջ գործածելու է would ու միւս դէմքերուն մէջ should: Եւ ահա այս պայմանականը կը զուգցուի նմանական պայմանի պարփակորէն: Իր ձեւը հետեւեալն է։

| | | |
|---|---|---|
| I would go | կ'երթայի, | կ'ուզէի երթալ |
| Thou shouldst go | կ'երթայիր, | երթալու էիր |
| He should go | կ'երթար, | երթալու էր |
| We would go | կ'երթայինք, | կ'ուզէինք երթ. |
| You should go | կ'երթայիք, | երթալու էիք |
| They should go | կ'երթային, | երթալու էին |

Հարցականին ձեւն է այս։

| | | |
|---|---|---|
| Should I buy? . . | կը գնէ՞ի, | գնելո՞ւ էի |
| Wouldst thou buy? | կը գնէի՞ր, | կ'ուզէի՞ր գնել |
| Should he buy? . | կը գնէ՞ր, | գնելո՞ւ էր |
| Should we buy? . | կը գնէի՞նք, | գնելո՞ւ էինք |
| Would you buy? . | կը գնէի՞ք, | կ'ուզէի՞ք գնել |
| Should they buy? . | կը գնէի՞ն, | գնելո՞ւ էին |

Այս երկու տեսակ պայմանականին գործածութեանը համար, ուշ դնելու է խօսողին դիտաւորութեանը. որ եթէ խօսողը բուն իր կամքը չյայտներ 'ի կիր ածելու է պարզ պայմանականը. և սոր հակառակը եթէ իր կամքը կը յայտնէ, գործածելու է կամական պայմանի պարտաւորիչ։

| | | |
|---|---|---|
| The grocer . | թհը կրօ'սըր | Համեմավաճառը |
| Gun . . . | կը՜ն . . | Հրացան |

Lodging . . լօ'ճինկ . . բնակարան

Bus[3]iness * . պի'զնէս . գործ, զբաղմունք

Ham . . . հէմ . . . ապուխտ խոզի

I should go to the country, because I am ill; but I shall not go, because I have too much business in town. I would buy some horses, but they are too dear. He would go out, but it is too cold. Father, will you take us to the theatre? I would take you there, but you must study your French lesson. Shall your servant go to market? He would go if I told him to do so. Where is your son? Would you believe it? He has gone to London. Where do you go to-day? I would go out hunting with my neighbour the grocer, but I have no gun. Where shall you take a lodging? I would take a lodging in that inn, but it is too dear. We should stay at home, if the weather is bad.

70

Պիտոր երթամ որսորդութեան (go out hunting) կի-րակի առաջիկայ: Կ'ուզէի երթալ, բայց չունիմ ոչ հրացան, ոչ շուն: Կ'ախորժէի՞ս (would you) քիչ մը խոզի ապուխտ: Կ'առնէի քիչ մը յօժարակամ, բայց անօթի չեմ: Ունի՞ բա-րեկամդ շատ գործ: Կ'ունենար շատ գործ, բայց շատ ծոյլ է: Կը հաւատա՞ք (would you believe it?). Ինքը կը քնանայ մինչև ժամը տասը: Կ'երթար ամեն իրիկուն թատրոն, բայց չունի ստակ բաւական: Ինչո՞ւ դուրս չես ելլեր. օդը գեղեցիկ է: Մենք կ'ելլէինք դուրս, բայց հայրերնիս թոյլ չտար այդ: Ինչո՞ւ համար թոյլ չտար ատիկայ: Վասն զի

* Այս գոյականը թէպէտ և յոգնակիի ձև ունի, հան-դերձ այսու բայն եզակի կ'առնու:

կ'ըսէ շատ անզուսպ (wild) ենք։ Կ'ուզէ՞ս բնակիլ տունս․ (Would you take a lodging)։ Կ'ուզէի յօժարակամ բնակիլ քու տունդ, վասն զի շատ կ'ախորժիմ անկէ, բայց շատ հեռու է քաղաքէն։ Երթա՞յ պիտի քու որդիդ գեղը մեզի հետ։ Ինքը կ'երթար, բայց ես թոյլ չեմ տար իրեն։

## ՀԹ

### Ստորադասական անցեալ։

| | |
|---|---|
| If I had . . . . . եթէ ունենայի | If I were . . . . եթէ ես ըլլայի |
| If thou hadst . եթէ ունենայիր | If thou wert . . եթէ դու ըլլայիր |
| If he had . . . . եթէ ունենար | If he were . . եթէ ան ըլլար |
| If we had . . . . եթէ ունենայինք | If we were . . եթէ մենք ըլլայինք |
| If you had . . . եթէ ունենայիք | If you were . . եթէ դուք ըլլայիք |
| If they had . . . եթէ ունենային | If they were . եթէ անոնք ըլլային |

I should have had . . կ'ունենայի, ունեցած ըլլալու էի

I should have been . կ'ըլլայի, եղած ըլլալու էի

5 4
To wash . . դու ուօ'շ . լուալ

2
Mistake . . միսդէ'ք . . վրիպակ

If I had money, I would buy the book. I would give you some, if you were good. If I had time, I would study the English language. If he had not so many bad friends, he would be more diligent, and his parents would be better satisfied with him. If my hands were dirty, I would wash them. If I had not been ill, I would have done my lesson. If you were not idle, you would speak already the French and the English languages. Why do you not go to bed? It is late. I would go to bed, if I were

ill. Why have you paid no attention to the lesson? I would have paid more attention, if the teacher had not scolded me. He would not have scolded you, if you had not made so many mistakes in your exercise. I should not have made so many mistakes, if the exercise had not been so difficult.

71

Կը լուայի ձեռքերս եթէ ըլլային աղտոտ։ Կը սիրէի զքեզ եթէ ըլլայիր այնպէս բարի ինչպէս քու հօրեղբօրորդիդ։ Եթէ ըրած ըլլայի (had done) դասս աղէկ պիտի գովուէի (I should have been) ուսուցչէն։ Կ'ունենայիր աւելի դրամ եթէ չըլլայիր այնպէս ծոյլ։ Կը խնդրէի շնորհք մը (a favour) իրմէն եթէ ըլլար հոս։ Կ'երթայի՞ր հետս Լոնտոն։ Կ'երթայի եթէ ունենայի դրամ բաւական։ Ի՞նչ կ'առաջարկէիր ընել առաջիկայ կիրակի։ Ես կ'առաջարկէի որսորդութեան երթալու, եթէ հրացան մը ունենայի։ Շնորհք ըրէ, փոխ տուր ինծի այն գիրքն որ սեղանին վրայ է քու եղբօրդ խուցը։ Կու տայի փոխ զայն քեզի յօժարակամ եթէ կարդացած ըլլայի զայն։ Ի՞նչ կ'ուզէիր դու գնել։ Կ'ուզէի գնել աղուոր զգեստ մը թէ որ ունենայ դրամ։

## ԸՆԹԵՐՑՈՒՄՆ

2 6 8
The story says, the Sultan was so touched

2 3 3 15
with this fable, that he rebuilt the towns and

3 3 43 3 35
villages, which had been destroyed; reduced

3 6
the taxes, with which the country was over-

6 • 6 •56• 6

burdened; and, from that time forward, consult-

5 3

ed the good of his people.

### Բառական թարգմանութիւն :

| | |
|---|---|
| The story says, . . . | Պատմութիւնը կ'ըսէ, |
| the Sultan was so touched | Սուլդանը եղաւ այնպէս զգածեալ |
| with this fable, . . . . | այս առասպելով, |
| that he rebuilt . . . . | որ ինքը նորէն շինեց |
| the towns and villages . | քաղաքներն ու աւանները |
| which had been destroyed; | որ ունէին եղած աւերեալ. |
| reduced the taxes, . . | Նուազեցուց տուրքերը |
| with which the country was overburdened; . | որոնցմով երկիրը էր ծանրաբեռնած. |
| and, from that time forward, . . . . . . | և այն ատենէն յառաջ |
| consulted the good of his people. | խորհեցաւ բարին իր ժողովրդեան: |

### Հայերէն թարգմանութիւն :

Պատմութիւնը կը վկայէ թէ Սուլդանը այնչափ զգածուեցաւ այս առասպելէն, որ կործանած քաղաքներն ու աւանները նորէն շինեց. Նուազեցուց տուրքերն որով երկիրը ծանրաբեռնեալ էր. և անկէ ետև իր ժողովրդեան բարւոյն ուշ դրաւ:

## Չ.

3

To be sleepy դու պի սլի'փի քուն ունենալ

To be angry with դու պի էնկրի ուի'թհ բարկացած ըլլալ ընդդէմ.

5 2

To wait for somebody դու ուէ՛յդ ֆօր սըմ՛ա՛մ-պօտի մէկի մը սպասել

As soon as possible էզ սուն էզ փօ՛սիպլ կարելի եղածին չափ շուտ

Rather . . րա՛տըր . . աւելի, մանաւանդ

Are you angry? No, Sir, I am rather sleepy. At what o'clock will you go to bed? I would go at ten o'clock, but I must [1] wait for my father who comes home at half-past eleven. He comes very late indeed. Would you rather go to the theatre or to the ball? I would rather go to the ball, but I am too sleepy. You are an idle fellow; you are always sleepy. When shall you pay your debts? As soon as possible. Why are you angry? Because I wish to go to Paris, and my father does not allow it. I am angry with my farmer, who has not paid me the rent. Do you want any money? Yes, Sir, because I have many debts. He has told me, he will pay you as soon as possible.

72

Կ՚ըլլայի աւելի երջանիկ եթէ ունենայի նուազ պարտք։ Ե՞րբ պիտոր դարձընես ինծի ստակն որ փոխ առիր քեզի։ Կարելի եղածին չափ շուտ։ Որո՞ւ դէմ (with) բարկացած ես։ Բարկացած եմ խոյրարարիս դէմ, որ չէ դեռ բերած իմ նոր գլխարկս։ Գնացի (I have been) այս առտու իր խանութը ու ինքն ըսաւ ինծի թէ պիտոր բերէ զայն քեզի կարելի եղածին չափ շուտ։ Պիտոր երթա՞ս Գաղղիա առաջիկայ տարին։ Կ՚ուզէի աւելի երթալ Անգղիա սորվելու Անգղիարէն աղէկ։ Եթէ քուն ունիս, ինչո՞ւ չես երթար

1 Must օժանդակէն ետքը, ինչպէս նաև բոլոր պակասաւոր բայերէն ետքը, հետագայ բային անորոշ դերբային to նշանակը զանց կ՚ըլլուի

անկողին։ Կ'երթայի անկողին, բայց պէտք է սպասեմ տիրոջս (for my) որ գնացեր է թատրոն։ Ժամը քանիին պիտի դառնայ։ Ցիրաւի չեմ գիտեր։ Բարկացած ես ինծի դէմ։ Ոչ, բարկացած եմ այն ծոյլ տղուն դէմ որ միշտ քուն կ'ըլլայ։

## ՁԱ.

| | | |
|---|---|---|
| To swim . . | դու սուի'մ . | լողալ |
| The storm . | տհը ստօրմ | փոթորիկը |
| Boat . . . | պօ'ուդ . . | նաւակ |
| The crowd . | տհը քրա'ուտ | ամբոխը |
| Never fear . | նէ'վըր ֆի'ըր | մի վախնար |
| Upset . . . | ըափսէ'դ . | շրջած, շրջեր |
| Take care . . | դէք քէ'ր . | ուշ դիր. զգուշացիր |
| For the sake of | ֆօր տհը սէ'ք օվ | համար, սիրոյն համար |
| For God's sake | ֆօր կօ'տս սէք | Աստուծոյ սիրոյն համար |
| What is the matter? | ուօ'դ իզ տհը մէ'դըր | ինչ կայ. պատճառը ինչ է |
| Thames . . | թէ'մզ . . | Թամիզ |

Կրնամ լողալ։ Այո պարոն։ Աստուծոյ սիրոյն համար, ուշ դիր առողջութեանդ. ինչ պիտոր տղաքդ ընեն եթէ

մեռնիս։ Կը բռնէի նաւակ մը, բայց կը վախնամ փոթորկէն։ Մի վախնար, կրնամ լողալ։ Կ'ուզէի աւելի բռնել կառք մը ու երթալ հասարակաց պարտէզը. աղուոր շրջագայութիւն (a walk) մըն է։ Ինչո՞ւ կայ այնչափ մեծ ամբոխ ճամբուն մէջ. Կարծեմ թագաւորը հասեր է։ Ոչ, նաւակ մը շրջեր է։ Ուշ դիր քսակիդ. գող մը կայ մէջերնիս։ Կա՞ր մեծ ամբոխ թատրոն։ Այո, կար նաեւ թագաւորը իր որդւովը։ Կա՞ն շատ նաւակներ Թամիզի վրայ։ Հա՛, այո. խիստ շատ. անցեալ եօթնեակը երկու հատ շրջեցաւ փոթորկէն։

## ԸՆԹԵՐՑՈՒՄՆ

2 2 2
THE ADVANTAGE OF NOT BEING ABLE TO SWIM

3 52
A gentleman, who went frequently from

2 6 6
one part of London to another, in a boat on the

2 6
Thames, was once in danger of being upset

3 52 13 2
in consequence of a violent storm. He told the

54 6 2
waterman to take care, but the latter replied:

« Oh! never fear, there is no danger, for I can

swim. » – « But I cannot, » said the gentleman.

15 6 2 2
However they landed safely. The next time

the gentleman was going to take a boat, he

called out, as he approached the stairs : « Who can swim? who can swim? » Several of the watermen ran towards him crying out: « I! I! I! » But he observed one among them who walked away, saying nothing; upon which he called to him : « Halloo! my fine fellow, why do you sneak away? » « Because, » replied he, « I cannot swim. » « Then, » said the gentleman, « you are the very man for me; because you will take care of me, for the sake of yourself. »

*Բառական թարգմանութիւն։*

| | |
|---|---|
| A gentleman, who went . | Մէկ ազնուական մարդ, որ կ'երթար |
| frequently from one part of London to another, | ստէպ մէկ կողմէն Լոնտոնի ցմիւս, |
| in a boat on the Thames, | 'ի մէկ նաւակ 'ի վերայ Թամիզի, |
| was once in danger . . | եղաւ անգամ մը 'ի վտանգ |
| of being upset in consequence . . . . . . | ըլլալով շրջելու 'ի պատճառս |

| | |
|---|---|
| of a violent storm. . . | մէկ բուռն փոթորկի։ |
| He told the waterman . | Ինքն ըսաւ նաւավարին |
| to take care, . . . . | առնուլ զգուշութիւն, |
| but the latter replied : . | բայց յետինը պատասխանեց․ |
| « Oh! never fear, . . . | « Է՜հ, մի վախնար |
| there is no danger, . . | հոն կայ ոչ վտանգ |
| for I can swim. » . . . | վասն զի ես կրնամ լողալ․ |
| « But I cannot, . . . . | — Բայց ես կրնամ ոչ, » |
| said the gentleman. . . | ըսաւ ազնուական մարդը։ |
| However they landed safely. . . . . . . | Հանդերձ այսու անոնք ցամաք ելան անվտանգ։ |
| The next time [1] the gentleman . . . . . . . | Յաջորդ անգամ ազնուական մարդը |
| was going to take a boat, | էր երթալով առնուլ մէկ նաւակ, |
| he called out [2], as he approached the stairs : . | ինքը կանչեց բարձրաձայն, ինչպէս ինքը մերձեցաւ սանդուղներուն․ |
| « Who can swim? who can swim? » . . . . . | « Ո՞վ կրնայ լողալ․ ո՞վ կրնայ լողալ։ » — |
| Several of the watermen ran towards him crying out . . . . . . . | Շատ մը նաւավարներէն վազեցին դէպ իրեն կանչելով բարձրաձայն։ |
| « I! I! I! » — . . . . | « Ե՛ս․ ես․ ես։ » — |
| But he observed one . . | Բայց ինքը դիտեց մէկը |
| among them . . . . . | 'ի մէջոյ անոնց |
| who walked away, saying nothing ; . . . . . | որ կ'երթար մէկ դի, ըսելով ոչինչ․ |
| upon which he called to him : . . . . . . | 'ի վերայ որոյ ինքը կանչեց անոր․ |
| « Halloo! my fine fellow, | « Ո՛վ դու, իմ սիրուն ընկեր, |
| why do you sneak away? » | ինչո՞ւ կ'ընես դու գաղտնի սահիլ մէկդի․ |
| « Because, » replied he, . | — Վասն զի, կրկնեց ինքը, ես |
| « I cannot swim. » . . . | կրնամ ոչ լողալ․ |
| « Then, » said the gentleman, . . . . . . | — Ան ատեն » ըսաւ ազնուականը, |

1 Զանցառութիւն that շաղկապի, շատ սովոր անգղիացւոց մէջ։
2 Out շատ մը բայերէ ետքը կը նշանակէ բարձրաձայն։

## Հայերէն թարգմանութիւն:

Հէնրիկոս չորրորդ արքայն Գաղղիոյ, օր մը որսի գնացած ըլլալով՝ իր ընկերները կորսնցուց ու մինակ կը ձիավարէր, երբ գեղացի մը տեսնելով՝ որ դրան մը մէջ կանգնած կարծես պահպանութիւն կ՚ընէր, հարցուց անոր ինչ բանի կը սպասէր: — Թագաւորը տեսնելու համար հոս եկեր եմ, պատասխանեց գեղացին: — Ետեւս հեծիր, ըսաւ Թագաւորը, և ես շուտ մը անանկ տեղ մը տանիմ ուր կարենաս տեսնալ զինքը: — Գեղացին առանց վարանելու ձին հեծաւ: Բայց մինչդեռ ձիավարելու հետ էին, այս հարցմունքս ըրաւ իր ընկերոջը. — Կ՚ըսեն թէ շատ մը ազնուականներ ունի հետը. ինչպէս պիտոր իմանամ որն է ինքը: — Թագաւորը պատասխանեց անոր՝ թէ կրնար որոշել զինքը դիտելով որ բոլոր իր ընկերները գլուխնին կը բանան մինչդեռ Թագաւորը միայն գլուխը գոց կը մնայ: Քիչ մը ետքը որսորդութեան տեղը հասան, երբ բոլոր ժողովը, ինչպէս կրնայ գուշակուիլ, մեծապէս զարմացաւ տեսնելով զարքայն այնպիսի այլանդակ ընկերութեամբ: Արքայն այն ատեն դարձաւ հարցուց գեղացիին թէ կրնա՞ր ըսել որն էր Թագաւորը: — Չեմ գիտեր, պատասխանեց ան. բայց անտարակոյս երկուքներէս մէկը ըլլալու է. որովհետեւ երկուքս ալ գլխարկնիս գլուխնիս դրած ենք:

## Խօսակցութիւն:

Where was Henry the Fourth one day? — Was he in company? — Whom did he observe standing on a gate? — What did the king ask him? — What did he answer? — What did the king reply? — How could the peasant know the king? — When did they join the hunt? — Why were the attendants greatly surprised? — What did his Majesty do when they had arrived? — What did he answer? — Why did he think it was either the king or himself?

## Ընտանեկան խօսակցութիւն։

| ԲԺԻՇԿԸ | THE PHYSICIAN |
|---|---|
| Բժիշկ մը կանչեցէք. շատ գէշ կը զգամ։ | Send for a physician; I feel very unwell. |
| Կա՞յ բժիշկ մը որ անգղիարէն հասկընայ։ | Is there a physician who understands English? |
| Տիկինը յանկարծ հիւանդ պառկեր է։ | The lady is taken suddenly ill. |
| Ի՞նչ կը զգաք։ | What is the matter with you? |
| Գլուխս կը ցաւի։ | I have a headache. |
| Գլուխս կըպտըտի։ | My head is giddy. |
| Ծանր հարբուղխ եղեր եմ։ | I have a bad cold. |
| Հազ ունիմ։ | I have a cough. |
| Կոկորդի ցաւ ունիմ։ | I have sore throat. |
| Ո՞րչափ ատեն է գէշ կը զգաք։ | How long have you felt yourself unwell? |
| Երէկուընէ 'ի վեր։ | Since yesterday. |
| Գիշերը աղէկ քուն կ'ըլլա՞ք։ | Do you sleep sound at night? |
| Լեզունիդ ցուցըցէք։ | Show me your tongue. |
| Երակնիդ նայիմ։ | Let me feel your pulse. |
| Քիչ մը ջերմ ունիք։ | You are feverish. |
| Պէտք է արիւն առնել տաք։ | You must be bled. |
| Մարելիք կը զգամ։ | I feel faint. |
| Շատ աւելի աղէկ կը զգամ։ | I feel much better. |
| Կրնա՞մ անկողնէն ելլել։ | May I get up? |
| Ի՞նչ բան ուտելու եմ։ | What may I eat? |
| Ձեզի բան մը պիտոր ղրկեմ որ առնէք։ | I will send you something to take. |
| Վաղը առտու նորէն կը դառնամ։ | I will call again to-morrow morning. |

## ԴԱՍ ՔՍԱՆԵՐՈՐԴ ԵՐԿՐՈՐԴ

## LESSON THE TWENTY-SECOND

### ՂԴ

Must[6] . . մըսթ . . . պէտք է, հարկ է

I must go . . . . . . պիտոր կամ պէտք է երթամ

Thou must speak . . . պիտոր կամ հարկ է խօսիս

He must buy . . . . պիտոր կամ պէտք է գնէ

We must leave . . . պիտոր կամ պէտք է մեկնինք

You must learn . . . պիտոր կամ պէտք է սորվիք

They must work[56] . . . պիտոր կամ պէտք է աշխատին

Must գիմազուրկ բայ է, ու միայն սահմանական ներկան ունի, որ երբեմն ալ անցեալի տեղ կը ծառայէ։ Ուրիշ ժամանակներու համար կը գործածուին to be obliged, to be forced, բռնադատուած ըլլալ, to be necessary for, հարկաւոր ըլլալ, խօսքերը։

Must կը նշանակէ հարկաւորութիւնը ու պարտաւորութիւնը վայելչութեամբ հանդերձ։ Կը ծառայէ նաև նշանակելու այն հաստատուն համոզումը որ ծանուցեալ բանէ մը առաջ կու գայ։ Օրինակի աղագաւ. *He must be angry with you* պէտք է քեզի դէմ բարկացած ըլլայ (վասն զի ինէն

նախադասին ըլլայ)։ Նմանապէս Ֆիզիքական կարեւորութիւնը կը նշանակէ. *All men must die.* Ամէն մարդ հարկ է մեռնի։

1
By heart . . պայ հարդ . բերնուց

52
Nowhere . . նօ'ուէր . տեղ մը չ...

6 52
Somewhere * սըմ'մուէր տեղ մը

Anywhere . էՆիուէր . տեղ մը

4
Go and call the servant . գնա ծառան կանչէ

6 15 6
Come and dine with us . եկուր ճաշէ հետեր-նիս

What must I do this evening? You must learn your lesson by heart. I do not like to learn by heart; it is too tiresome. Must I go anywhere? You must go nowhere; you must stay at home. You must work, if you wish to be happy. Tell your little brother he must put on his cloak, because it is very cold; otherwise he might catch a cold. Tell the servant he must go and call the physician. Come and write. Come and read. Go and ask your father if you may go out. He says I must learn my English lesson by heart. What is the matter with Mr. Pitiless? I thought I should find him with you. He must be very sad; a great misfortune has happened to him.

85

Եկուր ու շրջան մը ըրէ ինծի հետ։ Չեմ կրնար. պէտք է գրեմ աներձագիս որ աղաչեց ինծի պատասխանել իրեն

* Somewhere գործածելու է անանկ տեղ ուր some հարկ էր գործածել, և Anywhere ուր any.

կարելի եղածին չափ շուտ։ Ո՞ւր պիտոր երթաս այս իրի-կունը։ Տեղ մը (nowhere) պիտի չերթամ. պիտոր կենամ տուն, վասն զի պէտք է սորվիմ բերնուց գաղղիարէն դասս։ Պարոն, բարեկամ մը կայ որ կը փափագի խօսելու ձեզի։ Գնա և ըսէ իրեն, չունիմ ժամանակ։ Հարցուց ինծի երբ պէտք է դառնայ։ Կրնայ դառնալ եօթնուկէսին։ Թէ որ երթաս տեղ մը (anywhere) այս իրիկունը, առ վրադ (put on) քու թիկնոցդ, վասն զի ցուրտ է։ Թոյլ կու տա՞ս (will you) քու տղուդ երթալու հետս այս իրիկուն։ Չեմ կըր-նար թոյլ տալ անիկայ, վասն զի պէտք է գրէ շատ նամակ-ներ մեր բարեկամներուն։ Խնդրեմ (please) նստէ. պէտք է ըլլաս շատ յոգնած։

## ԼԵ

13 (with arc above)

I was obliged to go . . . . . . Հարկ եղաւ, պարտաւորեցայ, պարտաւո-րեալ էի երթալու
(2 2 2)

It was necessary for me to go . Հարկ էր եր-թայի, հարկ եղաւ երթամ

I shall be obliged . . . . . . . Պիտոր բռնա-դատուիմ

It will be necessary for me . . Հարկ պիտոր ըլլայ ինծի

Ինչպէս կը տեսնուի *must* բային պակաս ժամանակ-ները, կը շինուին to be obliged, to be necessary խօսքե-րով. առջինը գիմաւոր, երկրորդը անդէմ։

4 (with bar above)

Fault . . . ֆօլդ . . . մըխպակ, յան-ցանք

To pay a visit դու փէ՛յ է վի՛զիդ այցելութիւն մը ընել

| | | | |
|---|---|---|---|
| 55 News * | . . նի՛ուզ | . . . | նորութիւն, լուր |
| 3 6 Either... *or*... ** | ի'ռտըր... օր... | | կամ... կամ |
| Committed | . քոմի'դէտ | . . | յանձնեալ, գործեալ |
| 55 · 2 6 Newspaper | . նիուզփէ'յփըր | | լրագիր |

Where were you last evening, that I did not find you at home? I was obliged to go and pay a visit to my father-in-law, who returned last week from England. I have been obliged to ask pardon for a fault which I had committed. It will be necessary for me to study the English language, because I shall be obliged to go to England. What shall you do there? I shall have a good place. I think you had better stay in your own country, where you have a great deal of business. I had formerly much business, but now I have none at all. Have you read the newspaper to day? Yes, Sir? What is the news? There is great news. Where shall you go to-night? I shall go either to my teacher's, or to my friend's.

86

Ահաւասիկ Պր. Փօլայդ որ ըսէ պիտի մեզի օրուան լուրերը։ Շատ կը ցաւիմ, Պարոնայք, բայց այսօր շատ գործ ունեցայ. պարտաւորեցայ գրելու շատ նամակներ, և անոր համար չեմ կարդացեր լրագիրներն ու չեմ կրնար ըսել ձեզի եթէ կայ լուր։ Իրա՞ւ է որ մեր բժշկին որդին պէտք է մեկնի։ Իրաւ է։ Ո՞ւր պիտոր երթայ։ Չեմ գիտեր։ Դո՞ւն պիտի այս իրիկունը հօրեղբօրս՝ տունը սատ-

* *News* միշտ բայն եզակի կ'ուզէ։
** Կը հնչուի նաև այթըր։

րինջ խաղալու։ Ոչ, պարոն։ Կարծեմ հարկ է մեկնիմ (set out) ՚ի Գաղղիա։ Ուսուցիչս գրեց ինծի որ հիւանդ էր, կարծեմ պէտք է երթամ (I must go) ու տեսնամ զինքը։ Լաւ կ՚ընէիր (you had better) տունը կենայիր. ուսուցիչդ կը բնակի շատ հեռու, և դու կրնաս պաղ առնուլ (catch a cold) ՝ վասն զի օդը շատ գէշ է։ Ի՞նչ պիտի բերես տղոցդ։ Բերեմ պիտի իրենց կամ զգեստներ կամ գրքեր։

## ԸՆԹԵՐՑՈՒՄՆ

2 1 1 35 5 6
### AN EMBARRASSING QUESTION

2 3 35 3
Two peasants were deputed by their vil-
3 8 15 2 2 6
lage to go to a town, and select a skilful painter,
4 6 3 8 6 8
to make an altar-piece for their church. The
6 8 2 6 6
subject was to be the martyrdom of St. Sebast-
2
ian. The painter to whom they addressed them-
2 3 2
selves, asked them, if he was to represent the
2 2 15 2
saint alive or dead. This question embarrassed
35
them very much during some time, till at last
75
one of them said to the painter: « The surest
2
plan will be to represent him alive; we can
3 3 53
easily kill him, if we wish him dead ».

Բառական թարգմանութիւն :

| | |
|---|---|
| Two peasants were deputed | Երկու գեղացի էին ղըրկուած |
| by their village to go to a town, | իրենց գեղէն երթալու մէկ քաղաք, |
| and select a skilful painter, | և ընտրել մէկ ճարտար նկարիչ, |
| to make an altar-piece | ընելու մէկ խորանի կտոր |
| for their church. | վասն իւրեանց եկեղեցւոյն : |
| The subject was to be | Նիւթն էր ըլլալու |
| the martyrdom of St. Sebastian. | մարտիրոսութիւնն Սրբոյն Սեբաստիանոսի : |
| The painter to whom they addressed | Նկարիչն առ որ իրենք ուղղեցին |
| themselves, asked them, | իրենք զիրենք, հարցուց իրենց, |
| if he was to represent | Թէ որ ինքն էր ներկայացընել |
| the saint alive or dead. | զսուրբն կենդանի կամ մեռեալ : |
| This question embarrassed them | Այս հարցումն շփոթցուց զիրենք |
| very much during some time, | խիստ շատ առ քիչ մը ժամանակ, |
| till at last one of them | մինչև վերջապէս մէկն անոնցմէ |
| said to the painter: | ըսաւ նկարչին. |
| « The surest plan will be | « Ապահովագոյն յատակագիծը ըլլալու է |
| to represent him alive; | ներկայացընել զինքը ողջ. |
| we can easily kill him, | մենք կրնանք դիւրաւ սպաննել զինքը, |
| if we wish him dead ». | եթէ մենք փափագինք զինքը մեռած » : |

Հայերէն թարգմանութիւն :

Երկու գեղացի ղրկուեցան իրենց գեղէն որ քաղաք մը երթալով ճարտար նկարիչ մը ընտրեն, իրենց եկեղեցւոյն համար խորանի պատկեր մը շինել տալու : Պատ-

կերին նիւթն ըլլալու էր Ս. Սեբաստիանոսի նահատակութիւնը։ Նկարիչն առ որ գնացին՝ հարցուց իրենց թէ արդեօք սուրբը կենդանի՞ ներկայացնելու էր թէ մեռած։ Այս հարցումը մեծ շփոթութեան մէջ ձգեց զանոնք քիչ մը ժամանակ, մինչ հուսկ ապա անոնցմէ մէկը ըսաւ նկարչին. — « Ապահովագոյն ճամբան ըլլալու է ներկայացնել զինքը կենդանի. մենք դիւրաւ կրնանք սպաննել եթէ զինքը մեռեալ ուզենք »։

## ԴՁ

4
Ought, օդ, հարկի կամ պէտքի իմաստն ունի, սակայն աւելի բարոյական հարկը կամ պարտքը կը նշանակէ. այս ալ պակասաւոր է, և մի և նոյն ձևը կը ծառայէ թէ ներկայի և թէ պայմանականի. միայն այս տարբերութիւնը ունի միւս պակասաւոր բայերէն, որ իրմէն ետքը եկող անորոշ դերբայն առջևը to կ'առնէ։

| | |
|---|---|
| I ought . . . . | Պէտք եմ, պէտք էի |
| He ought . . . . | Պէտք է, պէտք էր |
| We ought . . . . | Պէտք ենք, պէտք էինք |
| You ought . . . | Պէտք էք, պէտք էիք |
| They ought . . . | Պէտք են, պէտք էին |

| | | |
|---|---|---|
| 5 5<br>Wounded . . | ուու'նտէտ . | վիրաւորեալ |
| 5 6<br>World . . . | ուըր'լտ . . | աշխարհ |
| 35 2<br>Duel . . . | տիու'էլ . . | մենամարտութիւն |
| 2<br>Happiness . | հէ'փինէս . | երջանկութիւն |
| 13<br>Lie . . . . | լայ . . | սուտ, ստութիւն |

Left . . . լէֆդ . . . թողած

4

To owe . . դոււ օ՛ . . . պարտիլ, պարտք ունենալ

4

At all . . . էդ օլ . . . ամենեւին

2 6 6

Flatterer . . ֆլէա'դըրըր շողոքորթ

I should like . այ շուտ լայք կ'ուզէի, կ'ախորժէի

3

Innkeeper . իննքի'փըր . պանդոկապետ

You ought to pay your debts. I should like to pay them, but unhappily I cannot. You ought to write to your uncle who is a very rich man. He died, the poor fellow, and left all he had in this world to his wife. But I saw him the day before yesterday; he was quite well! He was wounded in a duel. How much do you owe your tailor? One hundred and twenty-five francs. And to the innkeeper? Two hundred. It is a lie; I know you owe them both more than that. My pretty lady? Do not say pretty, I am not pretty at all; you are a flatterer; I do not like flatterers [1]. You ought always to tell the truth. I should like to go into the country. Where have you left your brother? I should like to speak to him. They say that in the world there is no happiness at all; but it is not true.

87

Որո՞ւ հետ խօսելու հետ էիր երբ ես ներս մտայ, (walked in)։ Կը խօսէի կօշկակարիս հետ որ բերեր է ինծի մոյկերը. կ'ըսէ թէ պէտք ունի (he wants) ստըկի։ Պէտք ես

1 Երբ գոյական մը ընդհանուր իմաստով կ'առնուի յօդ չառնուր։

*վճարել իրեն. աղքատ մէկ մըն է* (poor fellow)։ *Սուտ է, ինքը շատ հարուստ է*։ *Պէտք չէ* (you ought) *ամենեւին սուտ ըսես* (to lie)։ *Ի՞նչ ունիս այն ձեռքին մէջ*։ *Վիրաւորեցի ինք զինքս քու գմելինովդ*։ *Պզտի՛ տղաք ունենալու չեն երբեք դանակներ ձեռքերնին*։ *Իրաւունք ունիս*։ *Պէտք չէս մտիկ ընել* (to listen) *չողոքորթներուն. երբեք (չեն) ըսեր ճշմարտութիւնը*։ *Պէտք ես կարդալ երկու ժամ ամեն օր*։ *Դժբաղդաբար չեմ կրնար ընել ատիկայ, վասն զի չունիմ ստակ գնելու գրքեր կամ լրագիրներ*։ *Դու պարտք ունիս ինծի հինգ հազար եօթը հարիւր յիսուն ֆրանգ. Երբ պիտոր հատուցանես* (pay) *ինծի*։ *Իրաւ չէ. քեզի բան մը պարտք չունիմ. սուտ է*։

## Ղե

### I am to go – *երթամ պիտի, երթալու վրայ եմ*

To be *բայն՝ գլխաւոր բայլին անորոշ դերբային հետ կը գործածուի՝ մերձաւոր ապառնին կամ պէտքը նշանակելու համար, երբ մէկը ուզենայ ըսել որ որոշած է բան մը ընել, կամ նոյնը ընելու դիտաւորութիւն ունի*։

2

The bath . . *տհը պէտթ* *բաղանիքը*

To go for . . . . . . *առնելու երթալ*

" . . . . . . *կանչելու երթալ*

Go for the tailor . . . . . *գնա դերձակը կանչէ*

3 2 76 13

A relation of mine *է րիլէ՛շըն օվ մայն* *ազգականներէս մէկը*

3

To have need of . . . . . . *պէտք ունենալ*

To send for . . . . . . . *առնելու ղրկել*

" . . . . . . . . *կանչելու ղրկել*

*կամ տալ*

Send for the physician . . . բժիշկը կանչելու ղրկեցէք

3

To see . . . . . . . . . տեսնալ (այցելութեան մաօք)

„ . . . . . . . . գտնալ

A great many է կրէ'յդ մէ'նի շատ մը

3

The people * . տհը փի'փլ . մարդիկ, բազմութիւն

2

To assist . . դու էսի'սդ . ձեռք տալ, օգնել

2

To feel . . դու ֆիլ . . զգալ

2 6

Clever . . քլէ'վըր . . Ճարտար, յաջող

56 6 6

One another . ուըն էնօթէ'րհըր . իրարու, մէկզմէկ, մէկմէկու

3

Each other . իչ օթէ'րհըր . „

What are you to do to-night? I am to go to the ball. Will there be many people? There will be a great many people, because the king is to go there. Is your brother to go with you? No, Sir, he is to stay at home. Whom have you sent for [1]? I have sent for a friend of mine. Where is your boy? He has gone for some wine. Where are you to go to-night? I shall be obliged to go and see a friend of mine, who is very ill. Do you know the beautiful girl who went for my sister? Yes, she is

* People եզակի ու յոգնակի մի և նոյն է։

[1] Նախադրութիւնը շատ անգամ խնդիր բայէն կը բաժնուի ու խօսքին վերջը կը դրուի. և այս մանաւանդ կ'ըլլայ երբ բային խնդիրը հարցական կամ յարաբերական դերանուն մը ըլլայ։

my husband's cousin. I feel a little unwell; I shall be obliged to send for the physician. Who is your physician? Mr. Comeandgo. He is a relation of mine; he is a very clever man. But what is the matter with you? I have wounded my hand.

88

*Պիտի գամ վաղը տեսնելու զքեզ։ Գէշ կը զգամ* (I feel unwell). *Եթէ լաւագոյն չըլլամ* (if I am not better), *հարկադրուիմ պիտի կանչել տալու բժիշկը։ Ես կ'երթամ* (I will go), *եթէ կը հաճիս, բարեկամներէս մէկը կանչելու* (for one of my friends), *որ շատ յաջող երիտասարդ մըն է։ Միշտ անճարակ մէկ մը պիտոր ըլլաս* (a good-for-nothing). *Ինչ պիտոր ընես երբ հայրդ մեռնի։ Չեմ գիտեր։ Կա՛ր շատ բազմութիւն թատրոն երկուշաբթի իրիկուն։ Գնա՛ կանչէ դերձակս։ Չեմ կրնար երթալ վասն զի ժամանակ չունիմ. պէտք է երթամ տեսնամ ազգականներէս մէկը, որ հասեր է Գաղղիայէն. ղրկէ ծառադ զինքը կանչելու։ Տունը չէ. Ինչ ընելու եմ։ Բարեկամք օգնելու են* (should assist) *իրարու. բայց դու բարեկամ չես. դու շողոքորթ մըն ես* (you are but a fl.)։

## ԸՆԹԵՐՑՈՒՄՆ

### ALEXANDER THE GREAT

Alexander the great, being wounded in a battle by an arrow, said to those who were about him: « Every one calls me immortal and the son of Jupiter; what do you think of it? Does not this wound give the lie to all those flatter-

6 4 2
ers ? This blood, that flows, is of the same
6 2 6 3 13
colour as that of my subjects, and reminds me

that I am but a man ».

*Բառական թարգմանութիւն ։*

| | |
|---|---|
| Alexander the great, . | Աղեքսանդր մեծն, |
| being wounded in a battle | ըլլալով վիրաւորեալ ՚ի մէկ կռիւ |
| by an arrow, said to those | մէկ նետէ, ըսաւ անոնց |
| who were about him : . | որ էին շուրջը զինովաւ· |
| « Every one calls me . . | « Ուրաքանչիւր ով կը կոչէ զիս |
| immortal and the son of Jupiter ; . . . . . | անմահ և որդին Արամազդայ· |
| what do you think of it? | ի՞նչ կ՚ընէք դուք մտածել ատոր վրայ ։ |
| Does not this wound . . | Կ՚ընէ՞ ոչ այս վէրք |
| give the lie . . . . . | տալ զսուտ |
| to all those flatterers ? . | ամեն այն շողոքորթաց ։ |
| This blood, that flows, . | Այս արիւն, որ կը հոսէ, |
| is of the same colour . . | է նոյն գոյնէն |
| as that of my subjects, . | ինչպէս այն իմ հպատակներուս, |
| and reminds me . . . | և կը յիշեցընէ ինծի |
| that I am but a man ». . | թէ ես եմ եւեթ մէկ մարդ »։ |

*Հայերէն թարգմանութիւն ։*

« Մեծն Աղեքսանդր կռուի մը մէջ նետէ մը վիրաւորուելով, ըսաւ իր չորս դին կեցողներուն ։ — Ամէնը զիս անմահ կը կոչեն և Արամազդայ որդի․ ի՞նչ կը մտածէք դուք ։ Այս վէրքը չի՞ ստեր այն ամէն շողոքորթները ։ Այս վազած արիւնը մի և նոյն գոյն ունի ինչ որ իմ հպատակացս, և ինծի կը յիշեցնէ որ ես մարդ եմ »։

## Խօսակցութիւն ։

Who was wounded in a battle? — By what was he wounded? — What did he say? — To whom did he say it? — To whom did the wound give the lie? — Of what colour was the blood of the wound?

## Ընտանեկան խօսակցութիւն ։

| ԴԵՐՁԱԿԻ ՄԸ ՀԵՏ ։ | WITH A TAILOR. |
| --- | --- |
| Զգեստի մը պէտք ունիմ. ձեր օրինակները ցցուցէք ինծի ։ | I want a coat; show me your patterns. |
| Ունիմ զգեստներ ամեն տեսակ գոյնով, և ամենէն ազնիւ չուխայէ ։ | I have some of all sorts of colours, and of the finest cloth. |
| Դժուարին է ընտրել այնչափ բազմաթիւ տեսակներու մէջէն ։ | It is difficult to choose in so great a variety. |
| Ի՞նչպէս կ՚երևայ ձեզի այս կանաչը ։ | What do you think of this green? |
| Հիմակ շատ գործածական է, և ձեզի շատ յարմար գալու է ։ | It is very fashionable, and will suit you very well. |
| Նոյն նիւթէն կոճակ կ՚ուզէք, թէ ոսկեզօծ կոճակներ ։ | Will you have buttons of the same stuff or gilt ones? |
| Չափս առէք ։ | Take my measure. |
| Ուշ դրէք. չեմ ուզեր որ զգեստը շատ երկայն ըլլայ ։ | Mind, I do not wish to have the coat too long. |
| Կ՚ուզէք որ ինչուան ծունկը իջնայ ։ | Will you have it come down to the knees? |

| | |
|---|---|
| Ոչ այնչափ վար։ | No, not so low. |
| Ե՞րբ պատրաստ կ՚ըլլայ։ | When will it be made? |
| Կիրակի օր տուներնիդ կը ղրկեմ։ | I will send it home to you on Sunday. |

## ԴԱՍ ՔՍԱՆԵՐՈՐԴ ԵՐՐՈՐԴ

## LESSON THE TWENTY-THIRD

### ՂԸ

| | | |
|---|---|---|
| Myself [13] . . | մայ'սէլֆ . | Ես ինքն, զիս |
| Thyself [13] . . | տհայ'սէլֆ . | Դու ինքն, զքեզ |
| Himself [3] . . | հիմ'սէլֆ . | Նա ինքն, զինքն |
| Herself [6] . . | հօէ'րսէլֆ . | » (իգ.) |
| Itself . . . | ի'դսէլֆ . . | » (չէզ.) |
| Ourselves [15] . . | ա'ուրսէլվզ | Մենք ինքնին, զմեզ |
| Yourself [5] . . | եուր'սէլֆ . | Դու ինքնին, զքեզ |
| Yourselves . | եուր'սէլվզ . | Դուք ինքնին, զձեզ |
| Themselves . | տհէ'մսէլվզ . | Նոքա ինքնին, զիրենք |

Այս դերանուններս անգղիարէնի մէջ կը գործածուին թէ խօսքին աւելի ուժ տալու և թէ բայն անդրադարձ ընելու։

I saw [4] him myself . Ես ինքն տեսայ զինքը

34

I wash myself . . Կը լուամ զիս կամ կը լուացուիմ

Անգղիարէնի մէջ բայ մը անդրադարձ ըլլալու համար պէտք է որ նոյն բային անանկ գործ մը նշանակէ որ ուրիշի վրայ ալ կարենայ ըլլուիլ։

To wash one's self. — Ինքզինքը լուալ, լուացուիլ

Ներկայ

I wash myself . . . . . . կը լուացուիմ
Thou washest thyself . . . կը լուացուիս
He washes himself . . . կը լուացուի
She washes herself . . . " (իգ.)
We wash ourselves . . . կը լուացուինք
You wash yourself . . . կը լուացուիք (եզակի)
You wash yourselves . . . կը լուացուիք (յոգն.)
They wash themselves . . կը լուացուին

Կատարեալ

I have washed myself . . լուացուեցայ
Thou hast washed thyself . լուացուեցար
He has washed himself . . լուացուեցաւ
She has washed herself . . լուացուեցաւ (իգ.)
We have washed ourselves . լուացուեցանք
You have washed yourself . լուացուեցաք (եզակի մտօք)
You have washed yourselves լուացուեցաք (յոգն.)

They have washed themselves. լուացուեցան

Ինչպէս կը տեսնուի, անդրադարձ բայերը to have ունենալ բայով կը լծորդին։

To wash և to dress հագնիլ բայերը կը գործածուին անգղիարէնի մէջ նաև ըստ օրինակի անփոխադրական բայից. այսպէս կ՚ըսուի I am washing կը լուացուիմ, I am dressing կը հագուիմ։

2 35

To amuse one's self . . . զուարճանալ

13 2

To rise կամ arise — րա՛յզ . քնէ արթըննալ, անկողնէն կամ ոտք ելլել

2 13

To apply one's self — էփլա՛յ — ինքզինքը զբաղեցնել

2

To comb one's hair — քօմ — սանտրուիլ

3 2

To repent . . — րիփէ՛նդ . զղջալ

2

To spend . . դու սփէնտ անցնել (ժամանակը)

5 13

Whilst . . ուա՛յլսդ . մինչդեռ

To dress . . դու տրէս . հագուեցընել, հագուիլ

56

Whilst I was working — ուըշ՛րքինկ մինչդեռ կ՚աշխատէի

13

Provided . . փրօվա՛յտէտ միայն թէ, բաւական է որ

Hard . . . հարտ . . դժուարին

6 6 543
Otherwise . . Ը՛օտհըրուա՛յզ այլապէս. ապա թէ ոչ

4
To call on . թու քօլ օն . մէկը երթալ տեսնալ, մէկու մը այցելութիւն ընել

What is your son doing? He is washing himself. Must we go to the post-office ourselves? Yes, you must go yourselves. Have you done this work yourself? Yes, I have done it myself. How will you spend the day on Sunday next? I shall arise at seven o'clock, wash and dress myself; at nine I shall go and take a little walk, and afterwards call on a friend of mine, with whom I shall spend the day. Shall you amuse yourself? I hope so. To what do you apply yourself? To a very hard work. Apply yourself when you are young, otherwise you will repent. Is your sister at home? Yes, Sir, she is dressing herself. May I keep this book? Yes, provided you study it.

89

Ինքը անկողնէն կ'ելլէ ժամը եօթին։ Մենք կ'ելլենք ժամը ութին։ Ինքը (she) կը սանտրէ իր մազերը տասնըմէկին։ Անոնք կը զուարճացընեն ինքզինքնին։ Դուք կը զըղջաք։ Ինքը (she) կը զբաղեցընէ ինքզինքը յուսումն լեզուաց։ Ինչո՞ւ կը զբաղեցընես ինքզինքդ այնչափ։ Վասն զի վաղը ժամանակ չունիմ աշխատելու։ Ելի՛ր, սիրելի բարեկամ, արդէն խիստ ուշ է։ Ելլամ պիտի աւելի ուշ, վասն զի աղէկ չեմ։ Եթէ կ'ուզես զուարճանալ պէտք է նախ՝ աշխատիս։ Զուարճացա՞ր երէկ իրիկուն։ Խիստ շատ։ Թէ որ չընես ինչ որ ըսի քեզի՝ պիտի զղջաս։ Ինչո՞ւ համար չես հագուիր. դուրս երթալու ատեն է։ Շատ գեղեցիկ գործ մը ըրիր այսօր. բայց դու ինքդ ըրիր զայն։ Կրնամ ապահովցընել զքեզ որ ես ինքս ըրի զայն. կրնաս հարցընել հօրս ալ որ տեսաւ զիս մինչդեռ կ'աշխատէի։ Չհաւատայի պիտի (I would

not believe it) վասն զի շատ դժուար է, ու չգտայ սխալ։ Ե՞րբ պիտի երթաս գտնաս քու աներձագդ։ Պիտի երթամ գտնամ զինքը վաղը առտընմէկին։

## ՂԹ

By playing . պայ փլէ՛յինկ խաղալով

To rejoice at something դու րիձօ՛իս էդ սօէ՛մ-թինկ խնդակցիլ, ուրախանալ բանի մը վրայ

To be delighted with something – – տիլա՛յ-դէտ ուիթ՛տհ -- խնդալ., ուրախ., բանի մը վրայ

I take the liberty այ դէք տհը լի՛պէրդի կը համարձակիմ

Opportunity . օփօրդիու՛նիդի պատեհ

To acquire . դու էքուա՛յր ստանալ, ձեռք բերել

To perceive . դու փիօէրսի՛վ տեսնալ

To deserve . դու տիզօէ՛րվ արժանի ըլլալ

To warm one's self դու ուօ՛րմ ուըն՛ս սէլֆ տաքնալ

To avail one's self դու ավէ՛յլ ուընս սէլֆ օգուտ քաղել

The stove . տհը ստօվ . վառարանը

I rejoice at that man's happiness, because he deserves it. Do you perceive that man, who is warming himself in the sun? I perceive nobody. What is the matter with you? I cannot write; I am very cold. Go and warm yourself at the stove. You deserve to be blamed because you always rise late. I take the liberty of writing you this letter. If you do not avail yourself of this occasion, you will repent. I rejoice with you my dear friend, you deserve to be happy. I should like to go into your room and warm myself at the stove. I am sorry there is no fire in the stove. Then I will go and warm myself in the sun. Do as you like. One should avail one's self of every opportunity to acquire knowledge.

90

*Երբ պատուհան էի տեսայ մարդ մը որ տաքցընելու հետ էր ինքզինքը արևուն մէջ։ Ո՞վ էր ինքը։ Չեմ գիտեր։ Ինքը օգուտ քաղեց իմ բարութենէս ու խնդրեց ստակ։ Տուի՞ր իրեն։ Ոչ, վասն զի արժանի չէ ատոր։ Ո՞ւր է Յովհաննէս։ Իմ խուցն է, տաքցընելով ինքզինքը վառարանին քով։ Կը համարձակիմ խնդրելու ձեզմէ շնորհք մը։ Խնդակից եղաւ ինծի ՝ իմ բարեբաղդութեանս համար։ Եթէ կայ կրակ վառարանին մէջ կ'ուզեմ տաքցընել ինքզինքս։ Զղջա՛ ու ես պիտոր սիրեմ զքեզ* (I will like)։ *Թէ որ երթաս պատուհանը պիտոր տեսնաս կայսրը։ Կը մսիմ ու փոյթ չունիմ երթալ պատուհանը տեսնալու զկայսրը. չկայ բան մը արժանի տեսնալու յինքն։ Կը համարձակիմ գրելու ձեզի, վասն զի չեմ կրնար այց ելլելու ձեզի անձամբ* (myself)։

Ծ

## ԱՆԿԱՆՈՆ ԲԱՅԵՐ

*Անկանոն բայ կ'ըսուին անոնք որոնց անկատարը և անցեալ գերբայն* ed *չվերջանար։ Բայց այս երկու տարբերու-*

*թենէս, անկանոն բայերը կանոնաւոր բայերուն պէս կը լծորդին։*

*Ուսանողը քերականութեանս վերջը նշանակած կը գտնէ անկանոն բայերուն ցուցակը, որոց ամենէն աւելի գործածականները կամաց կամաց հրահանգներով պիտոր նշանակենք։*

*Կանոնաւոր բայերուն նման՝ ասոնց ալ կատարեալին ամեն դէմքերը մի և նոյն են, բաց 'ի եզակի երկրորդ դէմքէն։*

4

| | | |
|---|---|---|
| I *wrote* . . | . *այ րօդ* . | *գրեցի, կը գրէի* |
| Thou *wrotest* | – *րօ'դէսդ* | *գրեցիր, կը գրէիր* |
| He wrote | . *հի րօդ* . | *գրեց, կը գրէր* |
| We wrote | . *ուի րօդ* . | *գրեցինք, կը գրէինք* |
| You wrote | . *եու րօդ* . | *գրեցիք, կը գրէիք* |
| They wrote | . *տհէյ րօդ* | *գրեցին, կը գրէին* |

*Անկանոն բայերուն ուսումը դիւրացնելու համար հետեւեալ ընդհանուր կանոնները կը նշանակենք։*

*Այն բայերը որոնց անորոշ դերբայն երկու* ee *ունի վերջաւոր* d *տառէն առաջ, կատարեալ ու անցեալ դերբային մէջ մէկը կը կորսնցընեն։*

*Անոնք որ* eep *կը վերջանան, իրենց այս երկու անկանոն ժամանակներուն մէջ* ept *վերջաւորութիւն կ'առնուն։*

*Անոնք որ* end *կը վերջանան, կատարեալ և անցեալ դերբային* ent *վերջաւորութիւն կ'առնու։*

*Անոնք որ* ind *կը վերջանան, անցեալ դերբայնին կ'ըլլայ* ound*:*

*Անոնք որ* ing *կը վերջանան կը փոխուին* ung*:*

*Անոնք որ* ear *կը վերջանան անցեալ դերբայնին* orn *կ'ըլլայ։*

*Անոնք որ* aw, ew *կը վերջանան, անցեալ դերբայնին կ'ըլլայ* awn *կամ* own*, և կատարեալին* ew.

Այս անկանոն բայերուն կատարեալը և անցեալ դեր-բայն գանելու համար ուսանողը քերականութեան վերջը դրուած ցուցակին մէջ նայելու է։

| | | | կատար. | անց. դերբ. |
|---|---|---|---|---|
| To cost | դու քօսդ | արժել | cost | cost |
| To burn | դու պօէ'րն | այրել | burnt | burnt |
| To speak | դու սփիք | խօսել | spoke | spoken |
| To remind (3 13) | դու րիմա'յնտ | յիշել, յիշեցընել | | |
| To fail . . . | դու ֆէ'յլ | պակսիլ, մոռնալ | | |
| Steel (3) . . . | սդիլ . . . | պողպատ | | |
| Rose (4) . . . | րօզ . . . | վարդ | | |
| Pink . . . | փինք . . | շահոքրամ, մեխակ | | |
| Thorn . . . | թհօրն . . | փուշ | | |
| Nosegay (4 2) . . | նօ'զկէյ . . | փունջ ծաղկանց | | |
| To gather (2 6) . | դու կէ'տհըր | ժողովել | | |
| Bower (1 5 6) . . . | պա'ուըր . | սարփինայ | | |
| It is a pity | իդ իզ է փի'թի | մեղք է, ափսոս է | | |

How much did your black trowsers cost you? My black trowsers cost me twenty-five francs. I went too near the fire, and I have burnt my trowsers. It is a pity.

I rejoice that you have not burnt your leg. Remind me of my promise. I will not fail. What is the matter with that boy? Why is he crying? He burnt his finger in warming himself at the stove. When you speak to the Emperor, please to remind him of my business. I have already spoken to him, and I did not remind him of it. About what did you speak to him? I spoke about several things, and among others about the promise he had made me. What are you doing under that bower? I am gathering some pinks and roses, to make a nosegay. Take care you do not hurt yourself with the thorns.

91

Ի՞նչ այրեցիր։ Այրեցի կտոր մը թուղթ կրակ ընելու համար վառարանին մէջ։ Զգուշ եղիր չայրես անդրավարտիքին որ արժեց ինծի քսանըհինգ ֆրանք։ Իմինս արժեց ինծի շատ նուազ ու աւելի աղուոր է քան զքուկդ։ Թոյլ տուր ինծի ժողովելու քանի մը վարդ այն սարփինային տակէն։ Ի՞նչ կ՚ուզես ընել այն վարդերով։ Կ՚ուզեմ ընել մէկ փունջ մը իմ մօրս համար, որ կը սիրէ վարդերը խիստ շատ։ Լաւագոյն կ՚ընէիր ժողովել մեխակ. վարդերը ունին փուշ, և կրնաս վնասել քեզի։ Մի՛ մոռնար (do not fail) յիշեցընել քեզի քու խոստմունքդ։ Թէ որ երթաս շատ մօտ կրակին՝ պիտոր այրես ինքզինքդ։ Ի՞նչ ունի (what is the matter with) աղջիկդ որ այսպէս տխուր է։ Այրեց իր նոր գլխարկը որ արժեց իրեն տասնըութ ֆրանք։ Մեղք է յիրաւի։ Ի՞նչ բանի վրայ (about what) կը խօսէիր վարժապետին հետ, երբ ես տեսայ զքեզ պատուհանէն։ Կը խօսէի (I was speaking) այլևայլ (several) բաներու վրայ։ Խօսեցա՞ր նաև տղուս վրայ։ Այո, ու ինքը գովեց զան խիստ շատ։

## ԸՆԹԵՐՑՈՒՄՆ

### A WOMAN'S PROMISE

Henry Carey, cousin to Queen Elizabeth, after having enjoyed her Majesty's favour for several years, lost it in the following manner. As he was one day walking pensively in the garden of the palace, under the Queen's window, she perceived him, and asked him in a jocular manner: « Of what does a man think when he is thinking of nothing? » — « Of a woman's promise, » replied Carey. Some time after, he solicited the honour of a peerage, and reminded the Queen that she had promised it to him. « True, » said she, « but that was a woman's promise. »

Բառական թարգմանութիւն ։

| | |
|---|---|
| Henry Carey, | Հէնրիկոս Գարէ |
| cousin to Queen Elizabeth, | ազգական Թագուհւոյն Եղիսաբեթի, |
| after having enjoyed | յետ ունելով վայելեալ |
| her Majesty's favour | նորա վեհափառութեան շնորհքը |
| for several years, | վասն բազում ամաց, |
| lost it in the following manner. | կորոյս զայն հետևեալ կերպիւ ։ |
| As he was one day | Ինչպէս ինքն էր մէկ օր |
| walking pensively | քալելով մտախոհ |
| in the garden of the palace, | 'ի պարտէզն պալատին, |
| under the Queen's window, | ընդ Թագուհւոյն պատուհանաւ, |
| she perceived him, and asked him | Նա տեսաւ զինքը և հարցուց իրեն |
| in a jocular manner: | մէկ կատակի եղանակաւ. |
| « Of what does a man think | « Ի՞նչ բանի վրայ կ'ընէ մէկ մարդ մտածել |
| when he is thinking of nothing? » — | երբ ինքը է մտածելով ոչինչ. |
| « Of a woman's promise, » | — Մէկ կնկան մը խոստման վրայ, » — |
| replied Carey. | պատասխանեց Գարէ ։ |
| Some time after, he solicited | Քիչ մը ժամանակ ետքը ինքը խնդրեց |
| the honour of a peerage, | զպատիւն մէկ փառի աւագութեան, |
| and reminded the Queen | և յիշեցուց Թագուհւոյն |
| that she had promised it to him. | Թէ ինքը ունէր խոստացած զայն իրեն ։ |
| « True, » said she, | « Ճշմարիտ », ըսաւ ինքը, |
| « but that was a woman's promise. » | « բայց այն էր մէկ կնկան խոստմունք ։ » |

### Հայերէն թարգմանութիւն։

Հենրիկոս Գարէ, ազգական Եղիսաբեթ Թագուհւոյն, յետ շատ մը տարի անոր շնորհքը վայելելէն, հետեւեալ կերպով կորսնցուց զայն։ Մէկ օր մը պալատին պարտէզը և Թագուհւոյն պատուհանին տակը մտախոհ պտըտելու ատեն, Թագուհին տեսաւ զինքը ու հարցուց իրեն կատակի եղանակաւ. «Ի՞նչ բանի վրայ կը մտածէ մարդ մը երբ մտածածը ոչինչ է։ — Կնկան մը խոստմանը վրայ» պատասխանեց Գարէ։ Քիչ մը ատեն ետքը խնդրեց ֆաւաւագութեան պատիւը, ու յիշեցուց Թագուհւոյն որ ինքը խոստացեր էր զայն իրեն։ «Այո, ըսաւ Թագուհին, բայց այն կնկան մը խոստմունք էր»։

### Խօսակցութիւն։

What had Henry Carey enjoyed? — How long had he enjoyed her Majesty's favour? — Where was he walking one day? — How was he walking? — What did the Queen ask him? — What did Carey reply? — What did he solicit some time after. — And what did he remind the Queen of? — What did the Queen then say?

### Ընտանեկան խօսակցութիւն։

| ՊԱՐՏԷԶԻՆ ՄԷՋ։ | IN THE GARDEN. |
|---|---|
| Առանց տարակուսի շատ գեղեցիկ պարտէզ մը ունիք։ | You have certainly a very fine garden. |
| Շքեղ սարփինայ մը կայ. մարդ կրնայ անոր տակը արեւէն պատսպարուիլ։ | There is a magnificent bower; one may shelter one's self there from the sun. |
| Ինչպէս կը տեսնէք, ամէն տեսակ ծաղիկ ունինք։ | We have, as you see, all sorts of flowers. |
| Այո, յիրաւի, ահաւասիկ շատ գեղեցիկ մեխակներ։ | Yes, indeed, here are some very fine pinks. |

| | |
|---|---|
| Շատ կը զուարճանամ ես ինքս անոնք մշակելով։ | I take a delight in cultivating them myself. |
| Ըսիք որ կը փափաքէիք քանի մը ծաղիկ ժողվել՝ փունջ մը շինելու համար։ | You said you wished to gather some flowers to make a nosegay. |
| Ձեր թոյլտուութեան օգուտը չեմ ուզեր կորսնցնել։ | I will avail myself of the permission you give me. |
| Մի՛ վախնաք թէ զեղծանիք։ | Do not fear to abuse it. |
| Շատ շնորհակալ եմ ձեզի։ | I am much obliged to you. |
| Շնորհք ըրէք · ընդունեցէք ասիկայ ձեր քրոջը համար։ | Do me the favour to accept this for your sister. |
| Անոյշ բոյր մը ունի։ | It has a sweet smell. |
| Զանց պիտոր չընեմ իրեն տալու։ | I will not fail to give it to her. |

## ԴԱՍ ՔՍԱՆԵՐՈՐԴ ՉՈՐՐՈՐԴ.

## LESSON THE TWENTY-FOURTH

### ՃԱ.

2
I am glad of it. . . . Գոհ եմ ատոր վրայ: Ուրախ եմ ատոր համար:
What do you think of him? . . . . . . Ի՞նչպէս կ'երեւնայ քեզի ինքը:
I am satisfied with her. Իրմէն գոհ եմ:
I go to your house and he comes from there. Ես տունդ կ'երթամ ու ինքը անկէց կու գայ:

To go in . . դոշ կօ իճ . ներս մտնալ

To lend .. դոշ չէճմ . փոխ տալ. lent, lent

13
Dying . . . տա'յիճկ . . մեռնելով

13
To die . . . դոշ տայ . մեռնիլ

5 6
Reason . . րի'զն . . . խրատունք

3
To have need of . . . . . . պէտք ունենալ

America . . . Ամէ'րիքա Ամերիկայ

Is the teacher satisfied with your son? He is satisfied with him; he is the best of his pupils. I am very glad of it. Why have you not taken him with you? I

will tell you the reason. Are you satisfied with your new house? I am not satisfied with it; it is too small; have you seen it? I have just come from there; but there was nobody at home, and I could not go in. Have you spoken of it to the landlord? I have. Have you any money about you? I have some; do you want any? Yes, lend me twenty-five francs, if you please. I have already lent you fifty francs. You ought to call on your cousin; he is very ill, and he may have need of you. I called on him this morning; I was coming from there when I met you. How is he to-day? He is dying, the poor fellow. I am very sorry for it; it is a great pity, indeed.

92

Գո՞հ ես ինծմէն։ Գոհ չեմ քեզմէ, վասն զի շատ ծոյլ ես։ Հանդիպեցայ քու աներձագիդ այս առաւօտը. ըսաւ ինծի թէ իր հայրը դարձեր է Ամերիկայէն ուր շատ հարըստութիւն ժողվեր է (has made a great fortune). բայց ես չեմ հաւատար ատոր։ Իրաւ է։ Գնաց (went) հոն քսան ֆրանքով ու դարձաւ հարիւր հազարով։ Իսկ հայրս որ գնաց (went) հոն տասը հազար ֆրանքով՝ դարձաւ առանց ստըկի։ Կը ցաւիմ։ Ես ալ շատ կը ցաւիմ այդ դժբաղդութեանս համար, վասն զի չեմ կրնար գիրք գնել (any books)։ Պէտք ունի՞ս գրքի։ Ունիմ. վասն զի երբ չունիմ աղէկ գրքեր, չեմ գիտեր ինչպէս անցընել ժամանակը։ Կ'ուզեմ փոխ տալ քեզի քանի մը։ Շնորհակալ եմ. շատ բարի ես։

## ՃԲ

13

I know his kindness. Կը ճանչնամ իր բարութիւնը

2 13 3 5

I admire its beauty. Կը զմայլիմ և կը զարմանամ անոր աղուորութեանը վրայ։

| | | | | |
|---|---|---|---|---|
| To try (13) | դու դրայ | փորձել, ջանալ | | |
| Internal (6) | ինդօէ'րնէլ | ներքին | | |
| Cleanliness (3) | քլի'նլինէս | մաքրութիւն | | |
| To shut (6) | դու շըա'դ | գոցել | shut, | shut |
| To keep (5) | դու քիփ | պահել | kept, | kept |
| To show (4) | դու շօ | ցուցնել, | showed (4), | shown (4) |
| To translate | դու դրանզլէ'յդ | թարգմանել | | |
| Picture (6) | փի'քչըր | նկար, պատկեր | | |
| Birthday (6) | պօէ'րթհտէյ | ծննդեան օր | | |
| Violet (13) | վա'յօլէդ | մանուշակ | | |
| The translation (2 2) | տհը դրէանզլէ'շըն | թարգմանութիւնը | | |
| Portrait (2) | փօ'րդրէյդ | կենդանագիր | | |
| The bride (13) | տհը պրայտ | հարսը | | |
| Wind (53) | ուի'նտ | հով | | |
| Once more (56) | ուըն'ս մօր | ուրիշ անգամ մըն ալ. մէյմըն ալ | | |

Will you give me some flowers? What will you do with them? I shall make a nosegay. I will give you some. Do you like those pinks and violets? Yes, very much; give me some; my bride will admire their beauty. Would you like to live with us? Very willingly; I have seen your house, and remarked its internal cleanliness. You are a happy father; you have a very good and pretty daughter; every body admires her kindness and beauty. Have you given her any present for her birthday? I have given her one. Keep your word. I always keep it. Shut the door, if you please. I have already shut it, but the wind has opened it. Shut it once more. Has the painter shown you any pictures? He showed me some portraits, and I admired their beauty; he showed me also some very fine flowers, such as pinks, violets... Have you translated your exercise? No, this translation is too difficult. Try to translate it now, and ask me what you do not know. I will try, as you wish it.

93

Որ՞ այցելութիւն ըրիր կիրակի առաւօտ։ Քու բարի հօրեղբօրդ․ ինքը ազնուութիւն ըրաւ ցուցընելու ինծի բոլոր տունը, ու ես զարմացայ անոր ներքին մաքրութեանը։ Շատ բարի մարդ մըն է․ ամեն մարդ կը գովէ զինքը իր բարութեանը ու գիտութեանը համար։ Ցըցո՞ւց քեզի իր որդւոյն մէկ քանի պատկերքը։ Ցըցուց ինծի մէկ քանի, ու ես զմայլեցայ անոնց գեղեցկութեանը։ Ցըցո՞ւց քեզ իր պարտէզն ալ։ Ցըցուց զայն ինծի։ Տուա՞ւ քեզի մէկ քանի ծաղիկ։ Տուաւ ինծի մէկ քանի։ Ի՞նչ ըրիր անոնցմով։ Ըրի փունջ մը զոր հետս առի։ Ցըցուր ինծի թարգմանութիւնդ։ Կը ցաւիմ, բայց չեմ կրնար ցուցընել քեզի բան մը, վասն զի թարգմանեցի և ոչինչ։ Փորձեցի՞ր թարգմանելու հրահանգդ։ Փորձեցի, բայց գտայ զայն շատ դժուար։ Փորձելու ես մէյ մըն ալ․ հարցուր եղբօրդ բառերն որ չես գիտեր։ Պիտոր փորձեմ ընելու սատ։ Ինչո՞ւ չգոցեցիր

դուռը։ Վասն զի շատ տաք է։ Եղբայրդ խոստացաւ այց ելնելու ինծի, բայց չպահեց իր խօսքը։

### ԾԳ

To hear դու հիէր լսել· . . heard, heard, հօէրտ

To hold – հօլտ բռնել, պահել· held, held, հէլտ

To lay – լէյ հանգչեցնել· laid, laid, լէտ

To put – փուդ դնել· . . put, put, փուդ

To fall – ֆօլ իյնալ· . . fell, fallen, ֆէլ, ֆօլըն

Grammar . . կրէմ'մէր քերականութիւն

Nightingale . նա'յդինկէլ սոխակ

Bird . . . պօէ'րտ . . թռչուն

To spoil . . դու սփօյլ աւրել, փճացընել

To become . դու պիքըմ'մ ըլլալ

Fast . . . ֆէսդ . . անշարժ, շուտ

The wood . տհը ուու'տ անտառը, փայտը

The cage . . տհը քէյճ . վանդակը

The tongue . տհը դօէ'նկ լեզուն

A friend of mine. . . . Բարեկամներէս մէկը։

A friend of yours. . . Բարեկամներէդ մէկը։

Hold your tongue. I held her by the hand, because she was afraid of falling. Hold him fast, otherwise he will fall. He has already fallen. That poor lady fell down; I hear she has broken her leg. I have heard nothing of it. Where am I to lay my books? I think you should lay them on that table. No, because my brother might take them and spoil them. Are you fond of birds? Yes, very; but when they are in the woods, not in a cage. You are right, they never sing so well in a cage as in the woods. What are you looking for? I am looking for my gloves, which I laid on that chair. I put them in my room this morning.

94

Լսեցի՞ր թռչնոց (did you hear the birds) երգերը։ Այս առաւօտ լսեցի երկու սոխակ կ'երգէին (singing) անտառին մէջ։ Լսեցի՞ր բան մը Պարոն Լէյմին վրայ։ Լսեցի թէ Վեննա է, և թէ շատ աղէկ է։ Որմէ՞ն լսեցիր։ Իմ բարեկամներէս մէկէ մը որ հասաւ անցեալ շաբաթ։ Ո՞ւր դրեր ես (laid) անդրավարտիքն ու զգեստն որ դերձակը ղրկեց երէկ առաւօտ։ Դրի զանոնք աթոռի մը վրայ եղբօրդ սենեկին մէջ։ Որո՞ւ քերականութիւնն է այս։ Ձեմ գիտեր։ Կեցա՞ր երկայն ատեն գեղը այս տարի։ Կեցայ հոն միայն մէկ ամիս, վասն զի օդը գէշ էր. շատ ցուրտ էր, և կ'անձրևէր գրեթէ ամեն օր։ Գրքերդ փճացեր են, վասն զի կը դնես միշտ ջրին մէջ։ Ո՞վ ըսաւ քեզի թէ ես հիւանդ էի։ Բարեկամներէդ մէկը ըսաւ ինծի։

ՃԴ

To begin ղու պիկին սկսիլ. began, begun. պիկէն, պիկըն

To spend – սփէնտ ծախք ընել, անցընել (ժամանակ). spent, spent

To meet դու միդ հանդիպիլ . . . met, met

To read – րիտ կարդալ . . . . read, read

To understand – ընտըրսդէնտ հասկնալ. understood, understood

Perfectly . . փըէ՛րֆէքդլի կատարելապէս, բոլորովին

Slowly . . սլօ՛լի . . կամաց

Where did you spend the evening yesterday? We spent it at our teacher's, where we amused ourselves very much; we often spend an evening there, because we always meet with good company. Have you ever met my nephew there? Yes, once; it was last Sunday. Why did you come so soon from the theatre? Because I met no friends, and I did not amuse myself. How do you spend your time when you have nothing to do? I spend it in good company, or in reading some useful books. What are you reading now? Byron's works. I read them last year. Did you understand them well? I understood them perfectly well. I had begun to read Shakspeare's works, but I was not able to understand them; they are very difficult. When did you begin to study the English language? I began it in the year eighteen hundred and eighty-one. Did you understand the Englishman who spoke with me this morning? Not perfectly well. Speak more slowly, Mr. Pinkerton; I cannot understand you; you speak too fast.

95

Սկսա՞ր սորվիլ Գաղղիերէն լեզուն։ Դեռ ոչ, վասն զի չունիմ շատ ժամանակ ծախսելու յուսումն լեզուաց։ Շատ ստակ ծախսեցի՞ր երբ էիր Բարիզ։ Ծախսեցի աւելի քան

գերկու հազար ֆրանք։ Կը հասկընայիր Անգղիարէն յառաջ քան գերթդ յԱնգղիա։ Կը հասկընայի զայն յառաջ, բայց հիմա կը հասկընամ զայն լաւ ևս։ Հասկըցա՞ր այն Անգղիացի պարոնը։ Չկրցայ հասկընալ զինքը, վասն զի կը խօսէր շատ շուտ։ Ոչ ոք հասկընայ պէտք զքեզ եթէ չխօսիս աւելի կամաց։ Հանդիպեցայ վարժապետիդ այս առաւօտ. ըսաւ ինծի թէ սկսար զուսումն Անգղիարէն լեզուի երկու ամիս յառաջ (քան) զիս։ Ո՞ւր հանդիպեցար իրեն։ Թագաւորէն երէկոյը։

## ԸՆԹԵՐՑՈՒՄՆ

### A PLACE

A gentleman who possessed a small estate in Gloucestershire, was allured to town by the promises of the Duke of Newcastle, who for many months kept him in constant attendance; until the poor man's patience being quite exhausted, he one morning called upon his patron, and told him, that he had at length got a place. The Duke very cordially shook him by the hand, and congratulated him on his good fortune; telling him, that in a few days he would

2

have a good place. « But pray, Sir, » added he,

« where is your place? » « In the Gloucester

4 8. 5 55 13

coach » replied he, « I secured it last ni*gh*t. »

Բառական թարգմանութիւն ։

| | |
|---|---|
| A gentleman | Մէկ ազնուական մարդ |
| who possessed a small estate | որ ունէր յատուկ մէկ պզտի կալուած |
| in Gloucestershire, | 'ի Կլօսդըրշայր |
| was allured to town | եղաւ որսացուած 'ի քաղաքն |
| by the promises of the Duke of Newcastle, | 'ի խոստմանց դքսին Նիւքասլի, |
| who for many months kept him | որ ընդ բազում ամիս բըռնեց զինքը |
| in constant attendance; | 'ի յարատև ակնկալութիւն. |
| until the poor man's patience | մինչև խեղճ մարդուն համբերութիւնը |
| being quite exhausted, | ըլլալով բոլորովին սպառած, |
| he one morning called upon his patron, | ինքը մէկ առաւօտ այց ելաւ իր պաշտպանին, |
| and told him, that he had | և ըսաւ իրեն, թէ ինքը ունէր |
| at length got a place. | վերջապէս գտած մէկ տեղ ։ |
| The Duke very cordially | Դուքսը շատ սրտանց |
| shook him by the hand, | ցնցեց զինքը՝ ձեռքէն, |
| and congratulated him | և խնդակից եղաւ իրեն |
| on his good fortune; | 'ի վերայ իւր բարի բաղդին. |
| telling him, that | ըսելով իրեն, թէ |
| in a few days | 'ի մէջ մէկ քանի օրերու |
| he would have | ինքը ունենալու էր |
| a good place. | մէկ աղէկ տեղ ։ |
| « But pray, Sir, » added he, | « Բայց աղաչեմ, պարոն, » յաւելցուց ինքը, |
| « where is your place? » | « ո՞ւր է քու տեղդ ։ » |

« In the Gloucester coach » replied he: . . . .
« I secured it last night. »

« Ի Կլօսդըրը կառուն, » պատասխանեց ինքը․
« Ես ապահովցուցի զայն վերջին գիշեր ։ »

## Հայերէն թարգմանութիւն ։

Ազնուական մարդուն մէկը, որ 'ի Կլօսդըրշայր պզտի կալուած մը ունէր, Նիւքասըլի դքսին խոստմունքներովը որսացուեցաւ քաղաքը երթալու, որ քանի մը ամիս զինքը յարատև ակնկալութեան մէջ բռնեց ։ Մինչև վերջապէս խեղճ մարդուն համբերութիւնը բոլորովին հատնելով, առաւօտ մը գնաց այցելութեան իր պաշտպանին, և ըսաւ իրեն որ վերջապէս տեղ մը գտեր էր ։ Դուքսը սրտանց ձեռքը թօթուեց և խնդակից եղաւ իրեն այս բարեբաղդութեանը համար, ըսելով միանգամայն իրեն որ մէկ քանի օրէ աղէկ տեղ մը ունենալու էր ։ — Բայց, ըսաւ իրեն, ո՞ւր է քու գտած տեղդ ։ — Կլօսդըրը կառքին մէջ, պատասխանեց մարդը․ երէկ իրիկուն ապահովցուցի զայն ։

## Խօսակցութիւն ։

Who possessed a small estate? — By what was he allured to town? — How long did he keep him in constant attendance? — What was quite exhausted? — Upon whom did he call one morning? — And what did he tell him? — What did the Duke do? — On what did he congratulate him? — What did the Duke say? — What did he add? — What did the gentleman reply?

## Ընտանեկան խօսակցութիւն ։

**Ի ՄԷՋ ՏԻՐՈՋ ԵՒ ԾԱՌԱՅԻ**

Պարոն, ինծի ապսպրեցիք որ ձեզ ժամը տասնին արթընցընեմ ։

**BETWEEN A GENTLEMAN AND HIS SERVANT.**

Sir, you ordered me to wake you at ten o'clock.

| | |
|---|---|
| Ի՞նչ. ժամը տասն է. աղէկ, հիմա կ'ելլեմ։ | What! is it already ten o'clock? Well, I am going to get up. |
| Կ'ուզէ՞ք ձեր սենեկի զգեստը վրանիդ առնուլ։ | Will you put on your dressing-gown? |
| Ոչ, տուր գուլպաներս, շապկընկերս ու անդրավարտիքս։ | No, give me my stockings, drawers, and trowsers. |
| Ահաւասիկ։ | Here they are. |
| Հողաթափներս չեմ գտնար։ | I cannot find my slippers. |
| Փորչակալին քովն են։ | They are close to the night table. |
| Մաքուր շապիկ մը տուր։ | Give me a clean shirt. |
| Ի՞նչ փողպատ պիտի դնէք։ | What cravat will you wear? |
| Իմ սեւ մետաքսէ փողպատս։ | My black silk cravat. |
| Տուր ժամացոյցս, քթախոտի տուփս, ճերմակ թաշկինակ մը ու գաւազանս։ | Give me my watch, my snuff-box, a white handkerchief, and my cane. |
| Խոհեմ բան չէ՞ հովանոց մըն ալ առնել։ | Would it not be advisable to take an umbrella? |
| Կառք մը պիտի բռնեմ։ Եթէ մէկը զիս հարցընէ, կ'ըսես որ շատ չուշանամ պիտի տուն դառնալու։ | I shall take a coach. If any body asks for me, you will say that I shall soon be back. |

## ԴԱՍ ՔՍԱՆԵՐՈՐԴ ՀԻՆԳԵՐՈՐԴ

## LESSON THE TWENTY-FIFTH

### ՃԵ

**My brother and sister's house.** *Եղբօրս ու քրոջս տունը։*

*Երբ երկու կամ աւելի անձինք* and *շաղկապով միացեալ են և ստացող կը համարին մի և նոյն առարկային, սեռականին նշանը կը դրուի վերջին ստացողէն ետքը։*

The ladies' pride *տհը լէտիս փրայտ տիկնայց հպարտութիւնը։*

*Երբ ստացողին անունը կանոնաւոր յոգնակի ձեւով է, այսինքն* s *ով կը վերջանայ, այն ատեն ստացական սեռականը պարզ ապաթարցով կը նշանակուի։*

*Երբ ստացողին անունը սուր ձայն ունեցող տառու մը կը վերջանայ,* s *տառին տեղ պարզ ապաթարց մը կը գործածուի. բաւական է որ ստացողին անունը յատուկ անուն մը չըլլայ, ինչպէս* Felix's friends, *որ վերջաւոր* s *տառը կ'արտաբերուի* es*։*

2
The death . *տհը տէթհ* . *մահը*

43
The joy . . *տհը ձօյ* . . *ուրախութիւնը*

2 36
The behaviour *տհը պիհէ'վիըր* *կենցաղավարութիւնը, վարմունքը*

2
The shame . *տհը շէյմ* . *ամօթը*

| | | |
|---|---|---|
| Punishment[6] . | փընա'նիշմէնդ | պատուհաս |
| Severe[3 3] . . . | սիվի'ր . . | խիստ |
| Conscience[7 2] . | քօ'նշէնս . | խիղճ |
| Carriage . . | քէ'րիճ . . | կառք |
| Felix . . . | ֆէլի'քս . . | Փելիքս |

The father and mother's hopes were lost on the death of their only son. William and John's friend is a very good boy; he is his parents' joy and hope. The girl's bad behaviour was the shame of her parents. Your children deserve the severest punishment for their bad behaviour, because they are the shame of your family. Will you punish them? For conscience[1] sake I will. The ladies[2] pride was punished. The king and queen's carriages are the finest I ever saw. Have you found your book? I have found it in Felix's room.

96

Քու գէշ վարմամբդ դու կ'ըլլես (are) ծնողացդ ու բարեկամացդ ամօթ։ Ինչո՞ւ չես կրնար հետևիլ Փելիքսին օրինակին, որ է իւր հօրն ու հօրեղբօրը ուրախութիւնն ու պատիւը։ Չեմ կրնար հասկնալ ինչու Աւգոստոսի հրահանգներուն մէջ կան այնչափ սխալներ, ու Փելիքսիններուն մէջ կայ և ոչ մէկ մը։ Չեմ կրնար տանիլ այն տիկնայց հպար-

1 Երբեմն անձին վերաբերեալ ստացական նշանակը 'ի կեր կ'առնուի նաև երբ իրը զանձ մը չակնարկեր։

2 Այն անուններն որոնց նշանակաճը կը վերջանայ y ով՝ նախադաս ունենալով բաղաձայն մը, յոգնակիին կ'ըլլայ ies: lady, ladies, study, studies.

ածութեան։ Գուլիէլմոսի և Յոհաննէսի բարեկամները են դէշ աղայք. երբեք երթալու չես (you should never) հետերնին։

## ԾԶ

9 13
To get tired . թու կէթ թա'յըրտ յոգնիլ, ձանձրանալ

56
At once . . էթ ուա'նս . մէկէն

3 32
To request . թու րիքուէ'սթ խնդրել, հայցել

3
Proceeding . փրօսի'տինկ . ընթանալով, յառաջադիմելով.

Request * . րի'քուէսթ . խնդիր, հայցուած

13
To comply with a request թու քօմփլա'յ — հաւանիլ խնդիրքի մը

2 32
Agreeably to your request էկրի'էպլի — ըստ ձեր խնդրանքին

Gradually . կրէ'տիուէլի աստիճանաբար, ոտն առ ոտն

I do not like this proceeding, it is too slow. My dear, by proceeding gradually it is possible to acquire much knowledge; but if you have no patience, and wish to learn all at once, you will never learn anything. You must go slowly if you wish to go far; by running you get tired soon. I get tired if I study more than three

* Շատ բառեր կան որ մի և նոյն ատեն թէ գոյական են և թէ բայ. արտաբերութեամբ տարբեր կը ճանչցուին՝ գոյականներուն համար շեշտը առաջին վանկին վրայ դրուելով, իսկ բայերուն համար՝ երկրորդ վանկին վրայ։

hours a day. You get tired because you are an idle fellow. Dear Sir, agreeably to your request I send you the bill. I am sorry, I cannot comply with your request. By your knowledge you may gain much money. Why did he not comply with my request? Because he was not satisfied with your behaviour.

## ԾԷ

Կան շատ մը գոյական անուններ որոնց արական և իգական սեռը այլապէս կը տարորոշի․ երբ խօսակցութեննէն սեռը չհասկըցուիր ու հարկ է նոյնը նշանանակել, այն ատեն այս անուններուն վրայ վերադիր անուններ կը դրուին որ սեռը կ՚որոշեն, ինչպէս man, woman կամ maid, և այլն․ օրինակի աղագաւ։

Man-servant. Ծառայ։ Maid-servant. Աղախին։

Ուրիշ անուններու նկատմամբ, ինչպէս cousin, հօրեղբօրորդի, friend, բարեկամ, սեռը կ՚որոշուի էական կամ ստացական դերանունով, և կամ անձին անունով։

Կան դարձեալ ուրիշ խել մը գոյականներ որոց սեռը վերջաւորութեննէն կը զանազանի, ինչպէս․

| | |
|---|---|
| Duke . . . տիուք դուքս | Duchess . տօչըս դքսուհի |
| Emperor . էմփըրըր կայսըր | Empress . էմփրէս կայսրուհի |
| Marquis . մարքուիս մարքէզ | Marchioness մարշընէս մարքիզուհի |
| Ambassador էմպէսէտըր դեսպան | Ambassadress էմպէսէտրէս դեսպանուհի |
| [2] Heir . . . էյր ժառանգ | Heiress . . էյրէս կին ժառանգ |
| [13] [8] Bridegroom պրայտկրում փեսայ | [13] Bride . . . պրայտ հարսն |
| [46] Widower . ուիտօըր այրի մարդ | Widow . . ուիտօ կին այրի |

Կան այլք գործեալ որ սեռը որոշելու համար գոյականը բոլորովին կը փոխեն. ինչպէս father, mother, husband, wife, և այլն. միւս գլխաւորները հետևեալներն են։

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| Bachelor[3 6] | պաչիլըր | երիտասարդ | Maid | մէյտ | օրիորդ, կոյս |
| Earl | օէրլ | կոմս | Countess[18] | քաունթէս | կոմսուհի |
| Lord | լօրտ | տէր | Lady | լէ'տի | տիկին |
| Friar[36] | ֆրայըր | կրօնաւոր | Nun[6] | նըան | կուսան, միանձնուհի |
| Dog | տօկ | շուն | Bitch [1] | պիչ | քած |
| Cock | քօք | աքաղաղ | Hen[2] | հէն | մարի, հաւ |
| Bull[8] | պուլ | ցուլ | Cow[18] | քաու | կով |
| Horse | հօրս | ձի | Mare[2] | մէյր | մատակ ձի |
| Ram | րամ | խոյ | Sheep[3] | շիփ | ոչխար |

Unmarried . օնմէ'րիտ . չկարգուած

Do you know the Earl of Shrewsbury? Yes, he is English Ambassador in Munich. Do you also know his lady the Countess? No, I thought he was a bachelor. He lived as a bachelor till he was fifty years old, and then he married a very good girl. Do you see that girl? Yes, I see her; she was married the other day. Poor girl, it would have been better for her never to have married. The church was full of friars and nuns. What has the maid-servant bought at market? She has bought a cock and a hen. How much have you given for that fine dog? It is a bitch.

1 Bitch բառ ընկերութեան մէջ չգործածուիր։

97

Մարքիզն և մարքիզուհին հասան ընկերութեամբ կոմսին և կոմսուհւոյն: Կրօնաւոր մը և կուսան մը ճանապարհորդներ են հետերնին: Ո՞րչափ ծառայ ունի կոմսը: Երկու ծառայ ու մէկ աղախին: Ցաւսիկս, կ'ըսեն, չկան ոչ կրօնաւորք և ոչ կուսանք: Կոմսուհին ընդունած է իր բարեկամ մարքիզուհիէն աղուոր մատանի մը, ինչպէս Նոր Տարւոյն ընծայ: Աքաղաղն ու հաւը որ մեր աղախինը գներ է, պիտի զենուին. տիկնոջն որ պարգևեր է քած մը մեր աղջըկան: Ինչո՞ւ համար այն տիկինը մնացեր է չկարգուած: Վասն զի այն զոր ինքը կը սիրէր լաւագոյն ընտրեց մնալ ամուրի: Սակայն ինքն էր ժառանգ մեծ ստացուածոց (of a large fortune), ու պիտի ընէր (should have made) իր ժառանգները երջանիկ:

ԾԸ

Break[2] . . . պրէյք կոտրել. broke, broken

To know[4] – նօ' գիտնալ, ճանչնալ. knew[35], known

Left . . . լէֆդ . . . ձախ

Leg . . . լէկ . . . սրունք

Back . . . պէաք . . . կռնակ

To fall from horse-back. Ձիէն վար իյնալ

What has happened to your friend, that he did not come to school? The poor fellow has broken his leg, by falling on the ice. If you do not take care, you will break the cup. It is already broken. Who has broken

the two bottles? I don't know, but I think it was your child; I broke the glass, and was obliged to pay fifteen francs for it. The poor man fell and broke his left arm. Where did he fall? In our physician's garden, while he was gathering some flowers. Did you know the gentleman who fell from his horse, and broke his leg? I did not know him.; but I knew his wife, who was a friend of mine. Dear P. J. you are a charming creature.

98

Ո՞վ կոտրեր է շիշերն որ էին ստոլին վրայ։ Ես կոտրեցի զանոնք, բայց մի՛ վախնար, ես պիտի վճարեմ անոնց համար։ Մի վազեր այնչափ, ապա թէ ոչ պիտի կոտրես գաւաթներն որ՝ կը կրես։ Ինչո՞ւ չեկար աւելի շուտ։ Վասն զի հայրս ինկաւ ու կոտրեց իր ոտունքը, և ես հարկ եղաւ երթամ բժիշկը կանչեմ (to go for)։ Ո՞ւր երթալու հետ էր երբ ինկաւ ու կոտրեց իր ոտունքը։ Կ'երթար այցելութիւն ընելու բարեկամի մը զոր ինքը կը ճանչնար շատոնց յառաջ (long before)։ Ինչո՞ւ կու լաս, սիրելի տղաս։ Ինկայ ու կոտրեցի ժամացոյցը։ Կը ցաւիմ ատոր համար։ Ըլթէ ճանչնայի զինքը, կը խօսէի իրեն։ Ինքը չճանչցաւ զիս, թէպէտ և խօսած էր (he spoke to me) ինծի շատ անգամ։

ՃԹ

| | | |
|---|---|---|
| Whoever . . | հուէ՛վըր . | ով որ |
| Whosoever . | հու՛սօէ՛վըր . | » |
| Whomsoever | հում՛սօէ՛վըր | որուն, զոր և |
| Whatever . | հուօ՛դէվըր . | ինչ, ինչ ալ |
| The owner . | դհի օ՛նըր . | տէրը |

To lie . . . դուշ լալ . . սուտել

To swear դուշ ուշէ'ր երդնուլ. swore, sworn

To steal . – սղիղ . գողնալ. stole, stolen

To wear * – ուշէ'ր կրել. wore, worn

He swore that whoever should find the purse he had lost, would receive twenty-five francs. Whatever you may say, I don't believe you. By whomsoever he may be sent, I will not receive him, and I will not listen to him; because whatever he may say, I am sure it is not true, though he may swear he is telling the truth. Do you know the owner of the purse you have found? If I knew him, I would give him his money. The owner of these horses must be very rich. He was very rich, but now he is poor, because they have stolen a hundred thousand francs from him. Who stole them? He swore that it was his servant. Why do you wear spectacles? Because I am shortsighted. My brother wore them a year ago, but now he does not wear any.

99

Ինչո՞ւ կ'երդնուս այնպէս սուտ։ Անգամ մը (once) ըսի սուտ մը, և անոր համար չեն ուզեր հաւատալ ինծի։ Ով որ ըլլաս, և ինչ ալ ըսես (whatever you may say) չեմ կրնար հաւատալ քեզի։ Այս ձիուն տէրը երդուընցաւ որ ատիկայ կ'արժէ իրեն երկու հարիւր ֆրանք։ Կ'երդնում որ ինքը չէ տէրը․ ինքը գողցեր է զայն պարոնէ մը զոր ես կը ճանչնամ։ Ուրեմն ինքը գո՛ղ մըն է։ Կրնայի երդնուլ (I could swear) որ

* Կը գործածուի նշանակելու այն առարկաներն որ մարդ իր վրայ կը կրէ, ինչպէս գդակ, զարդարանք, և այլն։

դու կը ստես։ Չեմ ստեր․ կ'երդնում քեզի։ Ո՞ւր դրեր ես գիրքին որ փոխ տուեցայ քեզի։ Գողցուեցաւ ինծմէ։ Ո՞վ գողցեր է զայն քեզմէ։ Եթէ գիտնայի զայն կ'ըլլայի շատ գոհ (happy)։ Ինչո՞ւ համար միշտ կը կրես սև զգեստներ։ Վասն զի կը սիրեմ այս գոյնը լաւ ևս։ Երբեմն կը կրէի ակնոց վասն զի կարճատես էի․ բայց հիմա կը տեսնամ շատ աղէկ ու չեմ կրեր անոնք այլ ևս։

ԾԺ

54
To be in want of money. Ստըկի պէտք ունենալ

2
To settle a bill. . Հաշիւ մը գոցել, վճարել

13 — 15
To bind. Կապել, կազմել. bound, bound

513 — 515
To wind ուա'յնտ ոլորել, լարել. wound, wound

513
To wind up. . . . . Ժամացոյց մը լարել.

13
To find. . . Գտնալ. . . found, found

6 3
The attorney տհը աթօէ'րնի գործակալ, փաստաբան

15 6
The counsellor — քա'ունսէլըր խորհրդականը, փաստաբանը

3
Exceedingly . էքսի'տինկլի մեծապէս, վերջի աստիճանի

Unexpected . օէնսփէ'քդէտ անակնկալ, յանկարծակի

Have you bound the books which I sent you on Thursday morning? Have you wound up your watch?

I do not wind it up, because it does not go right. Sometimes I forget to wind up my watch, and then I am at a loss to know the time. The robbers bound him hand and foot, and were going to kill him, when the soldiers came and saved him. What is the man that I have found in your room? He is an attorney. Have you spoken with your counsellor? Not yet. Have you settled the watchmaker's bill? Not yet. When will you settle it? As soon as possible; now I am in want of money, and can settle no bills.

### 100

*Խնդրեմ, ըսէ ինծի ժամը քանի է։ Չեմ կրնար ըսել քեզի, վասն զի մոռցայ լարելու ժամացոյցս։ Հայրս լարեր է իւրը, բայց չէրթար աղէկ։ Ո՞վ կազմեր է այս գրքերը։ Գրավաճառն որ կը բնակի 'ի* Babylon *փողոցը Թիւ* 62։ *Ինքը կը կազմէ գրքերը շատ աղէկ։ Ինքը կը կազմէ զանոնք աղէկ, բայց ոչ այնպէս աղէկ ինչպէս ան որ կազմեր է անգղիարէն քերականութիւնս։ Գնացի՞ր* (have you been) *փաստաբանին քովը, և խօսեցա՞ր անոր մեր գործին վրայ։ Գնացի բայց չգտայ զինքը տունը։ Պէտք ունիմ խօսելու փաստաբանիս, վասն զի չեմ գիտեր* (I am at a loss) *ինչպէս լմնցնելու այս գործը* (affair)։ *Քու հաշիւդ հասաւ ինծի յանակնկալս, և ինչպէս ես պէտք ունիմ ստըկի՝ չկարենամ պիտի վճարել զայն մինչև յաջորդ եօթնեակը. անոր համար կը համարձակիմ* (I take the liberty) *խնդրելու քեզնէ սպասելու մինչև այն ատեն. պիտի ըլլամ մեծապէս երախտագէտ* (obliged) *քեզի։ Անցած օրը ընդունեցայ սիրունամակ մը 'ի* Տիկ. Ափօլաինկ. *ուրախ եմ գիտնալ որ ինքը աղէկ է։*

### ԾԺԱ

To drink . *դուշ տրինք* . *խմել*. drank[2], drunk[6]

To lie[13] — *լայ ընկողմանիլ, պառկիլ*. lay[2], lain[2]

| | | |
|---|---|---|
| To win [53] | դու ուի'ն | շահիլ, յաղթել. won, won [56] |
| Frosty . . | ֆրօ'սդի . . | ցրտասառոյց, շատ ցուրտ |
| Nearly [32] . . | նի'էրլի . . | գրեթէ |
| To follow . | դու ֆօ'լօ . | հետեւել |
| Example [2 2] . . | էկզէա'մփլ . | օրինակ |
| Lightly [13] . . | լա'յդլի . | թեթեւ, հեշտեաւ |
| The method [2 6] . | տհը մէ'թհըտ | ոճը, եղանակը |
| The fever [3] . | տհը ֆի'վըր | ջերմը |
| To fatigue . | դու ֆադի'կ | յոգնեցնել |
| Such [6] . . . | սօէ'չ . . . | անանկ |
| To earn . . | դու օէ'րն . | շահիլ |

How is the weather? The weather is fine, but it is a frosty day. Why then are you so lightly clothed? Because I have no other clothes to put on. I could not feel warm with such clothes. But I do. If you followed my example you would never be cold. Follow me, and I will show you where fine clothes are to be found. I had nearly arrived, when I was obliged to go back. Did you win much money? I won nearly a thousand francs. The banker won nearly two millions [1]. What is the matter

[1] Million յոգնակի ՝ մը կ'առնու ։

with your brother-in-law? He lies in bed; he drank too much last night. I drank more than he, and I am quite well. I had the fever; I lay in bed for twelve days. He has lain on the sofa the whole morning, because it was a frosty day, and he had no warm clothes to put on. Have you drunk any beer to-day? I drank five glasses, and afterwards I lay two hours on the hay. I do not like your method; one gets tired by studying it.

### 101

Շատ թեթեւ հագուած ես․ ցրտաստաւոյց օր մըն է, ու կրնաս պաղ առնել․ եթէ կ՚ուզես հետեւիլ խորհրդիս, գնա ու գիր վրադ (put on) աւելի տաք զգեստներ։ Ո՞րչափ կը շահիս օրը։ Իրեք ֆրանք։ Այն խեղճ տղան գրեթէ մեռած է ցրտէն․ պառկեր է բոլոր գիշերը յարդին վրայ։ Ի՞նչ խմեցիր երէկ գիշեր Անգղիոյ դեսպանին քով։ Խմեցի գարեջուր ու չայ։ Նաեւ խաղացի՞ր։ Այո, թուղթ․ ու յաղթեցի երկու հազար ֆրանգ։ Յաղթեր էի տասը հազար, բայց յետոյ կորուսի գրեթէ ութ հազար։ Ինծի նկատմամբ (as for myself), ես երբեք չեմ խաղար․ վասն զի երբ կը խաղամ ամենեւին չեմ յաղթեր։ Կը վախնամ հետեւելով քու ոճիդ, պիտոր յոգնեցնեմ ինքզինքս շատ շուտ։

## ԸՆԹԵՐՑՈՒՄՆ

8 4

### THE WARDROBE

As Louis the Sixteenth was, one frosty day going from Versailles to Paris, he saw a young man very lightly clothed,[3] tripping[3] along in as much seeming[3] comfort, as if it had been

6 6
in the midst of summer. He called out to him, and said : « How is it, that dressed as you are, you seem to feel no inconvenience from the cold, while I, notwithstanding the warm clothes I have on, am nearly perishing? » —
13
« Sire, » replied the other, « if your Majesty will follow my example, I will engage that you will be the warmest king in Europe. » —
« How is that? » said the king. « Your Majesty
3
need only, like me, carry all your wardrobe on your back. »

*Բառական թարգմանութիւն ։*

| | |
|---|---|
| As Louis the Sixteenth was, . . . . . . | *Ինչպէս Լուդովիկոս վեշտասա-սաներորդ էր,* |
| one frosty day, . . . | *մէկ ցրտասաստոյց օր,* |
| going from Versailles to Paris, . . . . . . . | *երթալով Վերսայլէն Բարիզ,* |
| he saw a young man . . | *ինքը տեսաւ մէկ երիտա-սարդ մարդ* |
| very lightly clothed, . . | *շատ թեթեւ հագուած,* |
| tripping along . . . . | *վազվզելով ընդ երկայն* |
| in as much seeming comfort, . . . . . . | *յայնչափ առերեւոյթս հան-գիստ,* |

| | |
|---|---|
| as if it had been in the midst of summer. . . | ինչպէս թէ այդ ըլլար եղած 'ի մէջ ամարան։ |
| He called out to him, and said : . . . . . . . | Ինքը կանչեց դուրս անոր, և ըսաւ. |
| « How is it, that dressed as you are, . . . . | « Ի՞նչպէս է այդ, որ հագուած ինչպէս դու ես, |
| you seem to feel no inconvenience from the cold, . . . . . . . | դու կ'երևաս զգալ ոչ ինչ անպատեհութիւն 'ի ցըրտոյ, |
| while I, notwithstanding the warm clothes . . | մինչդեռ ես, հանդերձ ջերմ զգեստները |
| I have on, am nearly perishing ? » . . . . | ես ունիմ 'ի վերայ, եմ գրեթէ մեռնելով։ » |
| « Sire, » replied the other, | « Արքայ, » կրկնեց միւսը, |
| « if your Majesty . . . | « եթէ ձեր վեհափառութիւնը |
| will follow my example, | ուզենայ հետևիլ իմ օրինա- |
| I will engage . . . . | կ'ուզեմ գրաւ տալ [կիս |
| that you will be . . . | թէ դուք ըլլաք պիտի |
| the warmest king in Europe. » . . . . . . . | ջերմագոյն արքայն Եւրոպայ։ » |
| « How is that? » said the king. . . . . . . . | « Ի՞նչպէս է այդ », ըսաւ արքայն։ |
| « Your Majesty need only, | « Ձեր վեհափառութիւնը պէտք ունի միայն, |
| like me, carry all . . . | նման ինձ, կրել բոլոր |
| your wardrobe on your back. » . . . . . . | ձեր հանդերձատունը 'ի վերայ ձեր կռնակի։ » |

Հայերէն թարգմանութիւն։

Լուդովիկոս վեշտասաներորդ մինչդեռ խիստ ցուրտ օր մը Վէրսայլէն Բարիզ կ'երթար, երիտասարդ մը տեսաւ որ շատ թեթև հագած ցատքըռտելով կ'երթար. անանկ հանգիստ երևոյթ մը ունենալով՝ ինչպէս թէ ամառուան կէսերը ըլլար։ Կանչեց զինքն ու ըսաւ. — « Ի՞նչպէս կ'ըլլայ ատ բանը որ այդպէս թեթև հագուած ըլլալովդ կարծես ցրտէն ամենևին նեղութիւն չես զգար, մինչդեռ ես, հանդերձ այս ջերմացուցիչ զգեստներովս որ կը կրեմ, գրեթէ կը մեռնիմ։ — Տէր արքայ, պատասխանեց միւսը, եթէ ձեր վե-

հափառութիւնը ուզենայ օրինակիս հետեւիլ, խօսք կու տամ որ Եւրոպայի ամենէն տաք Թագաւորը դուք կ՚ըլլաք։ — Ի՞նչպէս կ՚ըլլայ այդ բանը, ըսաւ Թագաւորը։ — Հարկ է միայն որ ձեր վեհափառութիւնը, ինծի նման, բոլոր իւր հանդերձատունը կռնակը կրէ»։

## Խօսակցութիւն։

Who was going from Versailles to Paris? — When was he going there? — Whom did he see tripping along? — How was the young man clothed? — What did the king say to him? — Whose example should his Majesty follow to be the warmest king in Europe. — What had the lad on his back?

## Ընտանեկան խօսակցութիւն։

| ՍՐՃԱՆՈՑԸ։ | A COFFEE-HOUSE. |
|---|---|
| Այդ սրճանոցը երթանք. հոն հանգիստ սրտով կը խօսակցինք։ | Let us go into that coffee-house; we will have a talk there at our ease. |
| Սիրով. ծարաւ եմ, բան մը խմելու պէտք կը զգամ։ | With pleasure; I am thirsty; I want to drink something. |
| Կ՚ուզէ՞ք պաղպաղակ մը, կամ քիչ մը լեմոնի օշարակ առնուլ։ | Will you take an ice, or some lemonade? |
| Շնորհակալ եմ. քիչ մը գարեջուր կ՚ուզեմ։ | Thank you. I will take some beer. |
| Սպասաւոր, քիչ մը ձերմակ գարեջուր բեր։ | Waiter, give me some ale. |
| Հապա դուք, Պարոն, դուք ալ կը հրամմէ՞ք անկէ։ | And you, Sir, will you take any? |
| Ոչ, ինծի տաք բունչ մը բեր։ | No, give me a hot punch. |
| Սակայն ես սովորեալ եմ ամեն առտու գաւաթ մը չիքօլաթ առնուլ, կէսօրէն ետք ալ չայ։ | As for me, I take a cup of chocolate every morning, and tea in the afternoon. |

| | |
|---|---|
| Ես ինչ և իցէ բանի՝ անտարբեր եմ։ | I am used to anything. |
| Պարոն, սա լրագիրը լմնցնելու ըլլաք ինծի շնորհք կ'ընէ՞ք։ | Sir, will you be so kind as to let me have the newspaper when you have done with it? |
| Ահաւասիկ, հրամմեցէք, ես կարդացի։ | Here it is, Sir, I have read it. |
| Քաղաքական խնդիրներու վրայ փոյթ կ'ընէ՞ք։ | Do you care about politics. |
| Շատ քիչ։ Միայն թատրոններու ու վաճառականական յօդուածներ կը կարդամ։ | Very little. I only read theatrical or commercial matters. |
| Նոր բան մը կա՞յ։ | Is there anything new? |
| Այսօր մասնաւոր փութոյ բան մը չկայ։ | There is nothing interesting to-day. |

## ԴԱՍ ՔՍԱՆԵՐՈՐԴ ՎԵՑԵՐՈՐԴ

## LESSON THE TWENTY-SIXTH

### ԾԺԲ

To be mistaken (2) միսդէ՛քըն . խաբուիլ

To mistake (2) . դու միսդէ՛ք խաբել, խաբուիլ

To live by . դու լի՛վ պայ ապրիլ բանով մը

To live upon . — — ըփօ՛ն . կերակրիլ, բանով մը ապրիլ

Stupidity (35 3 5) . սդիուփի՛տիդի տխմարութիւն

Fortune (6) . . ֆօ՛րչօէն . բաղդ, ինչք

Income (6) . . ի՛նքըմ . եկամուտք

Trade (2) . . . դրէ՛յտ . . արհեստ, վաճառականութիւն

To pity . . դու փի՛դի . մեղքնալ

I cannot help laughing — — հէլփ լա՛ֆինկ չեմ կրնար ծիծաղս բռնել

I cannot help weeping (5 3) — — ուի՛փինկ չեմ կրնար չլալ

What does this man live upon? He lives upon his income. And his brother, what does he live upon? He lives by his trade. What is he? He is a joiner. Were[1] I as rich as you, I would live upon my income. I cannot help laughing when I think of your stupidity. Had I as large an income as you, I would amuse myself. You would be wrong. You had better travel, because by travelling one learns a great deal. I cannot help pitying that poor fellow who lost all his fortune. I do not pity him, because he has lost it by gambling. You are right; he is not to be pitied. You are mistaken, he is a very good man, who lives by his trade.

**102**

Չկրնար (he cannot help) չաշխատիլ բոլոր օրը, Թէ-պէտ և է հարուստ ու կրնայ ապրիլ իր եկամուտովը: Եթէ էի ես այնպէս հարուստ ինչպէս դու, կ'ուզէի շատ ճամբորդութիւն ընել, վասն զի ճամբորդութեամբ մարդ կը սորվի աւելի քան թէ ուսմամբ գրոց (by studying in books): Եւս առաւել (so much the more) երբ մէկը միայն կը կարդայ գէշ գրքեր, ինչպէս դու կ'ընես: Չկրցայ լացս բռնել (weeping) երբ տեսայ զինքը այնպէս թշուառ: Եթէ ունենար արհեստ մը ապրելու, չէր ըլլար այնպէս թշուառ: Կը խաբուիս. կրնար ապրիլ իր արհեստովը, բայց չկրնար չխաղալ բոլոր օրը (all the day long): Ուրեմն արժանի է (he deserves) իւր թշուառութեանը:

## ՃԺԳ

2

Scarcely . . սքէ'րսլի : հազիւ

Insolence . . ի'նսօլէնս . լրբութիւն

1 Ստորադասական անցեալին մէջ if բառը կրնայ զեղչուիլ, նախադասելով բային քան դերանունը:

Bath . . . պա'թհ . . բաղնիք

2
Mad . . . մէա'տ . յիմար, կատաղած, բարկացած

2 2
Again . . . էկէ'ն . . . դարձեալ, նորէն

6
Blood . . . պլօէ'տ . . արիւն

6 2
Perhaps . . . փօէրհէա'փս գուցէ

3 2
Tear . . . դի'էր . . արցունք

3
The heat . . տհը հիդ . ջերմութիւնը

To bear – պէր տանել, համբերել. bore, borne

3 3
To bite . դու պա'յդ խածնել. bit, bitten

To shed . դու շէտ . թափել. shed, shed

3
To restrain . դու րիսդրէ'յն զսպել

I can bear cold better than heat. And I also, but the cold this winter is scarcely to be borne. He shed tears at the misfortune, which his friend bore with great patience. I have borne his insolence too long, but I will bear it no longer. The dog will not bite you. Perhaps not again, but he has bitten me already. The mad dog bit the man, who soon after died. I assure you he cannot bite; he has lost all his teeth. Let us go and take a bath. I cannot bear this heat. He repents of having shed blood. He could not help laughing, when he saw the

mad man. If you go there again, take care, because one can scarcely restrain him. But how old is he? He is not yet seventeen years old.

103

Ի՞նչպէս կրնաս համբերել այդպիսի լրբութեան։ Համբերեցի մէկ անգամ վասն զի պարտքս էր, բայց կ՚ապահովցընեմ զքեզ, պիտոր չհամբերեմ այլ ես, և եթէ ինքը նախատէ զիս դարձեալ, պիտի թափեմ իր արիւնը կամ ինքը պիտոր թափէ իմինս։ Զգուշացիր շունէն, պիտի խածնէ զքեզ, վասն զի կատղած է։ Արցունքներն որ թափեր ես, ուրեր են քու գեղեցիկ աչքերդ։ Ամառուան օր մը, Յովհաննէս՝ մեր բարեկամը, չկրցաւ տանիլ ջերմութեան. գնաց բաղնիք ընելու (to take a bath) գետը. բայց հոն կային երկու կատղած շուներ որ խածան զինքը։ Տեսածին պէս զիս՝ փախաւ։ Ես կ՚ըսեմ քեզի դարձեալ, զգուշացիր, այդ մարդը խենթ է, կրնայ վնասել քեզի։ Հազիւ թէ ըսեր էի ես զայդ, կատղած շունը վազեց անոր վրան ու խածաւ զինքը, ու Պր. Փինքերդըն չկրցաւ օգնել իրեն։

## ՃԺԴ

I have a black horse, and you have a white one.
Սև ձի մը ունիմ ես ու դու ունիս Ճերմակ մը։

Ածականը միշտ ընկեր կ՚ունենայ գոյականը. որպէս զի գոյականը չկրկնուի՝ ածականէն ետքը կը դրուի one բառը եզակիի համար և ones յոգնակիի համար։ Սակայն գիտելու է որ այս բառը չգործածուիր երբ անունը հաւաքական է, և ոչ իսկ բաղդատական ու գերադրական անուններէ ետքը։ Բայց թէ որ ածականներէն մէկը դրական է, ու միւսը բաղդատական կամ գերադրական վերոյիշեալ one բառը կրնայ գոյականին տեղը փոխանակուիլ։

To spoil . . . . դու սփօ՛յլ . վատնել

Cotton . . քօ'թն . . բամպակ

2
To tear դու դէ'յր պատռել. tore, torn

5 5 5 2
To weep . դու ուի'փ . լալ. wept, wept

13 3 3
To chide — չայ'յտ յանդիմանել. chid, chidden

6
Bitterly . . պի'թըրլի . դառնապէս

2
The page . . թհը փէ'յճ . էջը

Spilled . . սփիլտ . . թափեց

I want a hat; but it must be a good one. My father wants some wine; but it must be good. She wept the whole night, because she had torn her silk dress, and two cotton ones. If you tear this book, I shall scold you. He was scolded, because he tore two pages of the teacher's English book. You are mistaken, he has not torn the English book, but the French one. These English books are good for nothing; you may tear them; but those French ones are very useful, take care of them. He wept bitterly when I told him that you had torn his fine shirt. The rich man must die like the poorest one. You have a beautiful book, but your sister's friend has a much finer one.

104

Ի՞նչ պէտք ունիս Պարոն: Պէտք ունիմ զոյգ մը կօշկաց, բայց պէտք է ըլլան աղէկ: Ես կը շինեմ միայն աղէկ կօշիկներ (ones): Աւ աղէկ: Ինչո՞ւ համար լացեր ես: Վասն զի քոյրս պատռեց իմ մետաքսէ զգեստս ու թափեց թանաք բամբակէ զգեստին վրայ: Խեղճ աղջիկ, կը ցաւիմ վրադ

յիրաւի։ Ցանգիտմանեցի՞ր զինքը։ Ցանգիտմանեցի զինքը յիրաւի, և անոր համար բարկացած է ինծի։ Քու մայրդ ալ յանգիտմանելու է զինքը, այս թէ ոչ պատռէ պիտի բոլոր քու զգեստներդ։ Կրտսեր (young) քոյրը աւելի գեղեցիկ է քան զերէցը (elder)։ Եղբայրներ ունիս։ Ունիմ մէկ աղէկ եղբայր և մէկ գէշ մը, մէկ ազեղ քոյր և մէկ գեղեցիկ մը։ Զգոյշ եղիր, թէ որ պատռես այս գիրքը՝ վարժապետը պիտի յանգիտմանէ քեզ, և դու պիտի գնես ուրիշ մը։ Կը ցաւիմ. արդէն պատռեր եմ զայն. բայց հին էր. պիտոր գնեմ մէկ նոր մը ու կը խոստանամ քեզի պիտի չպատռեմ զայն։

## ՃԺԵ

2
To shake . . դոււ շէ՛յք . ցնցել, թօթուել
5
shook, shaken

2
To stand . . դոււ ստէա՛նտ կենալ, կայնիլ
5
stood, stood

To misunderstand . դոււ միսընտրրստէ՛անտ
սխալ հասկընալ

3 2 2 13
A bill payable at sight. . առ օրին վճարելի
փոխանակագիր մը

Since . . . սինս . որովհետև, քանի որ

2
To dare . դոււ տէ՛ր համարձակիլ, յանդգնիլ
6 2 2
durst, dared, dared

To shave . . դոււ շէ՛յվ . ածիլել
2 2 2
shaved, shaven, shaved

| | | |
|---|---|---|
| Razor [2 6] . . . | րէ՛յզըր . . | ածելի |
| To shake hands [2] | դոշ շէ՛յք հէնտս | ձեռք թօթուել |
| Below [3 4] . . . | պիլօ՛ . . | վար |
| Till . . . | դիլ . . . | մինչև որ |
| Dancer [2] . . | տէա՛նսըր . | կաքաւիչ |
| Ago . . . | էկօ՛ . . . | յառաջ |
| A week ago | է ուիք էկօ | շաբաթ մը յառաջ, շաբթէ մը 'ի վեր։ |

My dear friend, I am very glad to see you; where were you till now? I came an hour ago: I stood behind you, and therefore you did not perceive me. Why have you not taken your brother with you? He is below; he dares not come up. Since you are so kind, I will go and tell him to come. Can you stand on one foot? No, my dear, I cannot; I am not a dancer. If you want to shave yourself, you will find a razor in my room. I have already shaved myself. Did he dare to speak to the king? He dared to speak to the king, but not to the queen. Agreeably to your request, I send you a bill payable at sight. A physician once prescribed some medicine for his patient, and said to the servant: « When taken, to be well shaken. » The servant misunderstood this, and shook his master, till he was almost dead. Who are those two gentlemen shaking hands? I don't know, it appears they are friends.

105

Երբ հանդիպեցայ անոր թօթուեցի իր ձեռքը (I shook him by the hand), ու հարցուցի իրեն եթէ պէտք ունէր բանի մը։ Ինքը չհամարձակեցաւ պատասխանել ինծի, ու կեցաւ մօտ քառորդ մը ժամու առանց ըսելու խօսք մը. վերջապէս շարժելով իմ աղաչելէս, համարձակեցաւ ուզել ինծմէ ստակ, վասն զի չէր կերած երկու օրէ 'ի վեր (for two days)։ Որովհետեւ (since) ածիլեր ես զքեզ, շնորհք ըրէ փոխ տալ ինծի ածելիդ, որ կարենամ ածիլել զիս ալ։ Տեսայ զինքը ժամ մը յառաջ, բայց չհամարձակեցայ խօսելու իրեն։ Ո՞ւր տեսար զինքը։ Ինքը կեցեր էր քու եանդ։ Թէ որ տեսած ըլլայի զինքը ձեռք կը թօթուէինք, վասն զի ես ճանչցած եմ զինքը շատ տարի կայ, ու բարեկամ ենք։ Որովհետեւ իր բարեկամն ես, շնորհք ըրէ աղաչէ իրեն հատուցանելու ինծի ինչ որ պարտք ունի ինծի, վասն զի ես չեմ համարձակիր։ Ինքը ղրկեց ինծի փոխանակագիր մը հատուցանելի առ օրին, բայց չկրցայ դեռ առնել (get) ստակը։

ՃԺԶ

| | | |
|---|---|---|
| Enclosed. . . (2) | էնքլօ'զտ . | Ներփակեալ |
| Payment . . . (2 2) | փէ'յմէնդ . | վճարում, հատուցում |
| Receipt . . . (3 5) | րիսի'դ . . . | մուրհակ, ընկալագիր |
| Due . . . . (35) | տիու' . . . | պարտք, առնլիք |
| To be made . | դու պի մէ'յտ | ըլլալու, ընելու |
| The correspondent (2 2) | տիը քօրէսփօ'նտէնդ | թղթակիցը |

106

Մեր Թղթակիցն 'ի Վիեննա ուղեց մեզմէ հաշուին կըշիռը. չեմ գիտեր ինչպէս ղրկել իրեն ինչ որ պարտք կայ իրեն (what is due to him), վասն զի պէտք ունիմ ստակի և կան շատ մը ուրիշ վճարմունքներ ընելու այս ամիսը: Ներփակեալ պիտի գտնես ընկալագիր վասն հատուցման, արարեալ 'ի հատուցումն մեր հաշուին (to balance our accounts). կայ դեռ ևս եօթը հազար երկու հարիւր ու եօթանասունըհինգ ֆրանգ տալիք ինծի (due to me): Մէկ ամիս յառաջ խնդրեցի քեզմէ ղրկելու մեր հաշուին կշիռը, և դեռ ևս վճարումը չէ եղած: Կ'ուզէի ունենալ ընկալագիր մը վասն հատուցման զոր ես ըրի քեզի համար. կըրնաս ղրկել զայն ներփակեալ նամակի մը մէջ առաջին անգամ որ ունենաս պատեհ գրելու:

## ԸՆԹԵՐՑՈՒՄՆ

### THE WOLF AND THE LAMB

53 52

A wolf and a lamb were quenching their

3 35 2

thirst together at the same rivulet. The wolf

3

stood near the head of the stream and the lamb

2 3

at some distance below. The wolf, resolved to have a quarrel, says to the lamb: « How dare you disturb the water which I am drinking? » The poor little animal, all trembling, replied: « How can it be, since the current flows from

you to me? » Disconcerted by this truth, the wolf changes the accusation: « Six months ago, » said he, « you spoke ill of me. » — « Impossible, » answered the lamb, « for I was not then born. » — « No matter, it was your father, then, or some one of your family; » and he immediately tore the innocent animal to pieces.

*Բառական թարգմանութիւն:*

| | |
|---|---|
| A wolf and a lamb . . | Մէկ գայլ և մէկ գառն |
| were quenching their thirst . . . . . . . | էին անցունելով իրենց ծարաւը |
| together at the same rivulet. . . . . . . . | մէկտեղ 'ի նոյն առուակ: |
| The wolf stood near the head of the stream . | Գայլը կը կենար մերձ գլուխ հոսանքին, |
| and the lamb at some distance below. . . . | և գառը քիչ մը միջոց վար: |
| The wolf, resolved to have a quarrel, says to the lamb: . . . . . . . | Գայլը, որոշած ունենալ մէկ կռիւ, կ'ըսէ գառին. |
| « How dare you disturb . | « Ի՞նչպէս կը համարձակիս դու պղտորել |
| the water which I am drinking? » . . . . | ջուրն զոր ես եմ խմելով »: |
| The poor little animal, . | Խեղճ պզտի կենդանին, |
| all trembling, replied: . | բոլոր դողալով, պատասխանեց. |
| « How can it be, since the current flows . . . . | « Ի՞նչպէս կրնայ այդ ըլլալ, որովհետև հոսանքը կը հոսէ . . . . . . . |

| | |
|---|---|
| from you to me ? » | քեզմէ ինծի։ » |
| Disconcerted by this truth, | Խայտառակեալ այս ճշմար- տութենէն, |
| the wolf changes the accusation : . . . . . | գայլը կը փոխէ ամբաստա- նութիւնը. |
| « Six months ago, » said he, . . . . . . . . | « Վեց ամիս յառաջ, » ըսաւ ինքը, |
| « you spoke ill of me. » . | « դու խօսեցար չար իմ վրաս։ » |
| « Impossible, » answered the lamb, . . . . . | « Անկարելի, » պատասխա- նեց գառը, |
| « for I was not then born. » | « վասն զի ես էի ոչ այն ատեն ծնած։ » |
| « No matter, it was your father then, . . . . | « Փոյթ չէ, այդ էր քու հայրդ ուրեմն, |
| or some one of your family; » . . . . . . . | կամ ոմն քու ընտանիքէդ. » |
| and he immediately tore the innocent animal to pieces. . . . . . . | և ինքը անմիջապէս պատառեց զանմեղ կենդանին 'ի կտորս։ |

## Հայերէն թարգմանութիւն:

Գայլ մը և գառ մը մի և նոյն առուակը իրենց ծարաւը կ'անցունէին։ Գայլը հոսանքին վերը կեցած էր, իսկ գառը քիչ մը հեռի դէպ 'ի վար։ Գայլը միտքը որոշած կռուելու, կը դառնայ կ'ըսէ գառան. — « Ի՞նչպէս կը համարձակիս դու պղտորել այն ջուրն որ ես կը խմեմ » ։ — Խեղճ պզտի կենդանին դողդղալով կը պատասխանէ ։ — « Ի՞նչպէս կարելի է ըլլայ այդ բանը, որ հոսանքը քեզնէ դէպ 'ի վար ինծի կ'իջնայ » ։ — Այս ճշմարտութենէն խայտառակեալ՝ գայլը ամբաստանութեան նիւթը կը փոխէ ։ — « Վեց ամիս յառաջ, կ'ըսէ ; դու իմ վրաս չար խօսեցար ։ — Ո՛չ, անկարելի, կը պատասխանէ գառը, վասն զի ես այն ատեն ծնած չէի ։ — Փոյթ չէ, քու հայրդ էր ուրեմն, կամ ընտանիքէդ մէկ մը » ։ և անմիջապէս անմեղ կենդանին կտոր կտոր կ'ընէ ։

### Խօսակցութիւն։

What were a wolf and a lamb doing? — Where were they quenching their thirst? — Where did the wolf stand? — And the lamb? — Who resolved to have a quarrel? — What did he say to the lamb? — What did the lamb reply? — By what was the wolf disconcerted? — What did he change? — Had the lamb spoken ill of the wolf?

### Ընտանեկան խօսակցութիւն։

| ՎԱՐՍԱՎԻՐԱՅԻ կամ ՀԵՐԱՅԱՐԴԱՐԻ ՄԸ ՀԵՏ։ | WITH A BARBER OR HAIR-DRESSER. |
| --- | --- |
| Շատ ուշ կու գաս այսօր։ | You come very late to-day. |
| Ներեցէք խնդրեմ, անկարելի եղաւ աւելի կանուխ գալ։ | I beg your pardon, but it was not possible for me to come earlier. |
| Թէ որ աւելի ճիշդ չըլլաս ինծի ըրած ծառայութիւնդ պիտի կորսնցընես։ | If you are not more punctual, you will lose my custom. |
| Շուտ ըրէ, ածելիներդ կաշիէն անցուր ու մօրուքս ածիլէ։ | Be quick, strop your razors, and shave me. |
| Հանդերձ բոլոր ճարտարութեամբդ երեսս կտրեցիր։ | With all your skill you have cut me. |
| Վասն զի չկարծած ժամանակս խօսեցար։ | It was because you spoke when I did not expect it. |
| Ընչացքս շատ երկայն չե՞ն։ | Are not my mustaches too long? |
| Այդպէս աղէկ են։ | They are right so. |

## ԴԱՍ ՔՍԱՆԵՐՈՐԴ ԵՕԹՆԵՐՈՐԴ

## LESSON THE TWENTY-SEVENTH

### ԾԺԷ

| | | |
|---|---|---|
| Bravely | պրէ՛վլի | արիաբար |
| The same | տհը սէ՛յմ | նոյնը |
| The challenge | տհը չէ՛լէնճ | մենամարտի հրաւէրը |
| The prince | տհը փրի՛նս | իշխանը |
| To be introduced | դու պի ինդրօտիու՛ստ | ներկայացընել |
| Tolerably | դօ՛լըրէպլի | տանելի, բաւականի, չափաւորապէս |
| Gallant | կէա՛լէանդ | կտրիճ |
| The steam-boat | տհը սդի՛մ-պօդ | շոգենաւը |
| To make the acquaintance of | դու մէք տհը էքուէ՛յնդէնս օվ | ծանօթանալ, ճանչուորիլ |
| To fight | դու ֆայ՛դ | կռուիլ, զարնուիլ. fought, fought |

3
To mean . դու մին . . մտածել, իմանալ, ուզել ըսել, դիտաւորութիւն ունենալ.

3 2 2
meant, meant

What do you mean? . . . ի՞նչ կ'ուզես ըսել.
Be so kind as պի սօ քա՛յնտ էզ շնորհք ըրէ. սա ազնուութիւնը ըրէ

3
Enemy . . է՛նիմի . . թշնամի

2
Instead . . ինսդէ՛տ . փոխանակ

Who is that general? He is the same that commanded last year. No, it is his brother; I know them both. Where did you make the acquaintance of them? I was introduced to them by my cousin in Paris. Are they gallant? Yes; they both fought bravely in the Crimea. Do you think they will fight? Perhaps. Why did they fight? They fought for their liberty. Are you acquainted with that young prince? Yes, he is prince Leopold; I was introduced to him last week at our ambassador's. I should be glad to make his acquaintance; be so kind as to introduce me to him. Willingly. Instead of fighting for his country, he fought for his enemies. What do you mean? I will explain it to you tomorrow. He meant to offend you. Indeed? I will send him a challenge to fight with him. What do you mean? I was speaking of the gallant officer, to whom you introduced me the day before yesterday.

107

Շնորհք ըրէ (be so kind as) ներկայացընելու զիս այն Պարոնին. Ինծի ըսին կը խօսի անգղիարէն չափաւորա-

պէս, և անոր համար կը փափաքիմ ծանօթանալ իրեն: Կը ցաւիմ, ծանօթութիւն չունիմ իրեն հետ. երբեք չեմ ներկայացուած իրեն. սակայն կը ճանչնամ իր հայրը որ պատերազմեցաւ Ամերիկայ իմ հրամանատարութեանս (command) տակ, և եթէ կը հաճիս կը ներկայացընեմ զքեզ իրեն: Կ'ապահովցընեմ զքեզ (թէ) ինքը կտրիճ սպայ մըն է ու միշտ կռուած է արիաբար ընդդէմ թշնամեաց իւր հայրենիքին: Ի՞նչ կ'ուզէր ըսել այն խօսքերով: Ցիրաւի չեմ գիտեր. գուցէ միտք ունէր (intended) նախատել զքեզ. եթէ այդպէս, պէտք է զրկես իրեն հրաւէր մարտի ու զարնուիս հետը: Ի՞նչ կ'ըսես: Ոչինչ որ քեզի նախատինք ըլլայ (can offend you): Միտք ունիս մեկնելու շուտով: Չեմ գիտեր. թերևս պիտոր մեկնիմ առաջիկայ շաբաթը շոգենաւով: Օրիորդն Ալիս Փարսընս պիտի հետդ գայ (follow you): Կը յուսամ:

## ՃԺԲ

3 . . . 3, 3, 3
To beat դու պիդ զարնել. beat, beat, beaten

3
To feel . դու ֆիլ . զգալ felt, felt

2 53
To be acquitted դու պի էքուի'դէտ արձակուիլ, ազատ ըլլալ

To come off . դու քըմ'մ օֆ ազատիլ

To get off . դու կէդ օֆ . խալըսիլ

3 6
To feel the pulse դու ֆիլ տհը փըա'լս երակը զննել

13
The trial . . տհը դրա'յալ դատը

13
Slight . . . սլայդ . . թեթև

Candle[2] . . քէա'նտլ . . Ճրագ

For stealing[3] ֆօր սդի'լինկ գողնալու համար. գողցած ըլլալուն համար

Without speaking . . . . առանց խօսելու

What was the matter with you? . . . ինչ բան ունէիր։

Նախադրութիւնք դերանուններու հետ գործածուելով հայցական կ'ուզեն, իսկ բայերու նկատմամբ կ'ուզեն ներկայ դերբայն։

At noon[5] . . էթ նունն . . կէսօրը

To clear up[3] . դու քլի'ըր ըա'փ պայծառանալ, բացուիլ

To break into դու պրէ'ք ինդու' յարձակիլ

To break up . . — . . . փարատիլ, տեղի տալ

To go on . . դու կօ օն . . շարունակել

To put out[1 5] . դու փուդ ա'ուդ մարել

The meeting[3] . տհը մի'դինկ . գումարումը, ժողովը

To take place[2] դու դէք փլէյս տեղի ունենալ, դիպիլ

Hall . . . հօա'լ . . սրահ

How did he come off? I think he was acquitted. When did the trial take place? Last Saturday. How do you feel? I am angry, because he stole twenty pounds from me, and he was acquitted without any good reason. The weather clears up; let us go and take a walk. The meeting broke up at noon, without coming to any resolution. Go on, and tell us what has happened. The soldiers broke into the town, and we were frightened. He felt offended, and sent him a challenge. He came off with a slight wound. Put out the candle, it is not yet dark. He put out the fire because it was too warm. Let me feel your pulse. They have arrested a thief who had stolen a gold watch. When does the trial take place? Next Monday, at a quarter past-two. A crowd broke into the hall (հոլ, սրահ)։

107

Յետ գողնալուն ու սպաննելուն, ազատեցաւ (he got off) մէկ տարուան բանտարկելութեամբ։ Կարծէի որ արձըկուեր էր։ Ձե՞ր դատին։ Ոչ. երբ տեղի ունեցաւ։ Անցեալ ամսուան քսանըհինգին։ Ես չէի հոն, վասն զի չէի ըզ-գար աղէկ։ Ի՞նչպէս [illegible] զգաս հիմա։ Լաւագոյն, շնորհակալ եմ։ Ի՞նչ բան ունէիր։ Վախցայ երբ զինուորները յարձըկեցան քաղաքը։ Շատ երկայն ատեն հիւանդ եղա՞ր։ Ազատ եղայ երեք օրուան ջերմով։ Ինքը մարեց ճրագը ու գնաց անկողին։ Մարէ կրակը. շատ տաք է այս խցիս մէջ։ Թէ որ օդը պարզի, պիտոր շրջան մը ընեմ տղոցս հետ։ Բռնուեցաւ գողցած ըլլալուն քիչ մը չուխայ մեր հօրեղբօրը դերձակէն։ Դատուեցա՞ւ։ Ոչ, արձըկուեցաւ։ Յետ նամակ մը գրելուն անցուց ճրագը ու դուրս ելաւ։

ԾԺԹ

2
To lay the cloth . դոշ լէյ տհը քլօթհ  սեղանը պատրաստել, սփռոցը դնել

6
To sing . դոշ սինկ . երգել. sang, sung

4
To show into  դոշ շօ ինդու' մտցընել

4 56
To get forward – կէդ ֆօ'րուըրտ յառաջադիմել

15
Around . . էրա'ունտ  շուրջ

6
To get up . դոշ կէդ ըափ վեր ելլել, ոտք ելլել

54
Walk in . . ուօ'ք ին . . ներս մտիր

4
The floor . . տհը ֆլօր . դստիկոնը

2 2
The staircase  տհը սդէ'յրքէյս  սանդուղք

43 5
The drawing-room  տհը տրօ'ին րում  սրահ, ընդունելութեան սենեակ

The song . . տհը սօնկ . երգը

The satisfaction – սէադիսֆէա'քշըն  գոհունակութիւն, հաճոյք

This way . . տհի'ս ուէյ . այս դին

To the left . դոշ տհը լէ'ֆդ  ձախ դին

I had the satisfaction of seeing your father in good health. Get up, if you please, there is a gentleman who wishes to see you. He had the satisfaction of being introduced to the prince. Somebody is knocking. It is Mr. Deaf. Show him into the drawing-room. Did your sister sing at the concert last night? Yes, she sang an Italian song. I am told she sings very well. Do you sing also? No, I do not. Waiter, show us into the dining-room. It is on the second floor; this way gentlemen; go up by this staircase. This staircase is very high indeed; I am tired. Lay the cloth Charles. Directly Sir. John, show these gentlemen into the dining-room; they look very hungry. Put some chairs around the table. On which floor do you live? On the third floor. Somebody is knocking: walk in. Let us go; if a gentleman should come, show him into the drawing-room. My cousin wrote to his master that he could not take a lesson to-day. What did he write? Here is the copy of the letter.

Sir,

I am sorry to say, I cannot take a lesson to-day. My father has come back this morning from Brussels, and wishes to see us all around him, as he has been so long away from home. I shall come to take a lesson tomorrow and will be very diligent, that I may make progress in my English studies. My father and mother send you their best compliments, I am, yours respectfully,

CHARLES SMILE.

108

Ինչո՞ւ համար չերգեցիր միւս գիշեր 'ի Թատրոնի։ Ինծի ըսին (I am told) շատ աղէկ կ'երգես։ Չերգեցի վասն զի կը զգայի զիս անհանգիստ, սակայն եղբայրս երգեց իտալերէն երգ մը։ Մտցուր պարոնը ընդունելութեան սենեակը։ Ո՞ւր կ'ուզէք երթալ։ Սեղանատունը (dining-room).

Առաջին դատիկոնն է։ Ելիր վեր սանդուղներէն ու մտիր երկրորդ դուռը ձախակողմը։ Այս կողմը, պարոններ։ Ո՞ր դատիկոնը բժիշկը կը բնակի։ Հինգերորդը։ Սորվէ, սիրելիս, որ կարենաս յառաջադիմել և ըլլալ ուրախութիւնքու ծնողացդ։ Դուռը կը զարնեն։ Ո՞վ է։ Պարոն Պրաունրիկ է։ Մտցուր զինքը ընդունելութեան սենեակը և ըսէ իրեն շուտ կու գամ (I am coming directly)։ Դուլիէլմոս, սեղանը պատրաստեցի՞ր։ Դեռ չէ. դուք ըսիք ինծի սփռոցը դնելու վեցին, ու դեռ ժամը միայն հինգ ու կէս է։ Երբ պատրաստ է եկուր ըսէ ինծի։

## ԾԻ

| | | |
|---|---|---|
| To leave [3] . . | դու լիվ . . | Թողուլ. left[2], left |
| The United States [35] [13] | տհի իունա՛յթէտ ստէյթս | Միացեալ Նահանգք |
| Notorious [6] . . | նօթօ՛րիըս . | Հռչակաւոր |
| The corkscrew [5] | տհը քօ՛րքսքրու | Խցանահանը |
| Mushrooms [6] [5] . | մըա՛շրումզ . | Սունկք |
| Long ago . . | լօնկ էկօ՛ . | Շատ յառաջ, շատոնցուընէ 'ի վեր |
| To pick . . | դու փիք . | Քաղել, մաքրել |
| To give notice | դու կիվ նօ՛թիս | Ազդել |
| To commit . | դու քօմի՛թ . | Յանձնել |
| To commission | դու քօմի՛շըն | Ապսպրել |

| | | |
|---|---|---|
| To order . . | դու օ՛րտըր | պատուիրել |
| 2 52<br>Rail-way . . | րէ՛յլ-ուէ՛յ . | երկաթուղի |
| 52<br>Fluently . . | ֆլու՛էնթլի . | երագ, հեշտեաւ |
| The pocket . | տհը փօ՛քիտ | գրպանը |
| Pick-pocket . | փի՛ք-փօ՛քիտ | քսակահատ |
| 3 35<br>To refuse . . | դու րիֆիու՛զ | ժխտել, չուզել |
| Negligence . | նէ՛կլիճէնս . | անհոգութիւն, զանցառութիւն |
| 2<br>Station . . | ստէ՛շըն . . | կայարան |

Do you like mushrooms? O yes, very much; I am sorry they are so dear, otherwise I should eat some every day. He left me alone and went away. Why has he left his country? Because he was pursued by his creditors. The waiter has forgotten to bring a cork-screw. Waiter, a corkscrew, if you please. Directly Sir. What is your country Sir? I am a Frenchman. And how does it happen that you do not speak French more fluently? Because I left my country long ago. Did you leave your parents there? I only left my father there, my poor mother was already dead. They take the photographs of notorious pick-pockets in the United States. Why do they call them pick-pockets? Because they pick other people's pockets. Please, Miss Hennig, to give me notice when you are to arrive, that I may come and meet you at the rail-way station.

109

Կ'ուզէի թողուլ հայրենիքս ու երթալ ու բնակել Անգլիա, եթէ ծնողքս պէտք չունենային ինծի (did not need me)։ Ո՞ւր թողուցիր խցահանը։ Ստոլին վրայ սեղանատունը։ Ինչո՞ւ համար չմտուցիր պարոնները ընդունելութեան սենեակը։ Վասն զի չուզեցին վեր ելլել։ Ըսէ ծառային՝ որովհետև ունինք ընկերութիւն ճաշի, կը փափագիմ ունենալ սունկ։ Գրած կ'ըլլայի (I should have written) քեզի շատոնց յառաջ, եթէ ունեցած չըլլայի այնչափ գործ. կը յուսամ ձեր բարութեանը վրայ (you will be so kind as) ներել իմ զանցառութեանս։ Թողուցած կ'ըլլար զիս շատոնց յառաջ եթէ սիրած չըլլար զիս (had he not loved me)։ Դու խօսած կ'ըլլայիր անգլիարէն հեշտեաւ շատոնցուընէ 'ի վեր, եթէ եկած ըլլայիր աւելի փութաջան, և միշտ եկած ըլլայիր (had always come) դասերուն։ Իրաւունք չունիս բարկանալու ինծի դէմ. եթէ տուած ըլլայիր ինծի որ պէտք ունէիր տալիքի, ըրած կ'ըլլայի կշիռք (I should have balanced) մեր հաշիւներուն շատոնց յառաջ։ Աղէկ ինծի երբ կը փափաքիս ունենալ գրքերն որ տպագրեցիր ինծի ղրկելու։

## ՃԻԱ

Cash . . . քաշ . . . դրամ, գումար

The full balance (2) տհը ֆուլ պէա'լէանս բովանդակ կշիռը

To deliver (3 3 6) դու տիլի'վըր յանձնել, հասցընել

To send . . դու սէնտ . ղրկել

Importance . իմփօ'րդէնս կարևորութիւն

Messrs . . մէսիօ̂է՛րս . պարոնայք

Messrs Bread et C.° . Պարոնայք Պրէտ և ընկերք

Վաճառականական ոճով ընկերութեան մը անձանց անուանը առջև, Messieurs, Պարոններ ածականը կը գրուի համառօտագրութեամբ Messrs.

Շատ անհանգիստ եմ, որովհետև չեմ ընդունած լուր ձեր վրայ ամբողջ ամիս մը (of you for a whole month)։ Ղրկեցի ձեզի նամակ մը հանդերձ մէկ ներփակելով մը ամենակարևոր (of great importance), զոր՝ կ՚աղաչէի ձեզի յանձնել իր հասցէին։ Կը համարձակիմ ղրկել ձեզի փոխանակագիր մը վճարելի առ օրին 'ի վերայ Պարոնայց (այս անուն), որոնք յանձնեն պիտի ձեզի, անշուշտ գումարը (the cash), զոր դուք հաճեցէք պահել (keep) 'ի բովանդակ կշխումեր հաշիւներուն։

## ԸՆԹԵՐՑՈՒՄՆ

38

### A VERY SINGULAR EXCUSE

13 7 2 35

An Irishman, accused of having stolen a

6

gun, was taken, and brought to justice. On the

13 3 32

day of trial, he was reflecting on what defence

6

he should make before the judges, when he saw

3 6 4

a fellow prisoner return from the court, having

been tried for stealing a goose. — « Well, » said the Irishman, « how have you come off? » — « Oh! » replied the other, « I am acquitted. » — « What defence did you make? » — « Why, I told the judge that I had brought up the goose from the time it was a gosling, and that I had witnesses to prove it. » — « Very good, indeed, » said Paddy, who was at that moment called into court to take his trial; « stay a short time for me, I shall soon be acquitted. »

He was then conducted to the bar, the accusation was read, and the judge asked him what he had to say in his defence. « My lord, » replied the Irishman, « I have brought up that gun ever since it was a pistol, and I can bring witnesses to prove it. » — The judge, however,

35 6 72 2 35 6
and the jury were not sufficiently credulous,
2 2
and poor Paddy was condemned to be transported.

### Բառական թարգմանութիւն։

| | |
|---|---|
| An Irishman, accused . | Մէկ Իրլանտացի, ամբաստանեալ |
| of having stolen a gun, . | ունենալով գողացեալ մէկ հրացան, |
| was taken, and brought to justice. . . . . | եղաւ բռնուած, և բերուած դատաստանը։ |
| On the day of trial, he was reflecting . . . | Ցաւուրն դատաքննութեան, ինքն էր խոկալով |
| on what defence he should make . . . . . . | 'ի վերայ զինչ պաշտպանութիւն ինքը ընելու էր |
| before the judges, when | առաջի դատաւորաց, երբ |
| he saw a fellow-prisoner | ինքը տեսաւ մէկ ընկեր բանտարկեալ |
| return from the court, having been . . . . | դառնալ յատենէ, ունենալով եղած |
| tried for stealing a goose. | քննեալ վասն գողանալով մէկ սագ։ |
| « Well, » said the Irishman, | « Ալէկ » ըսաւ Իրլանտացին, |
| « how have you come off? » | « ինչպէս ունիս դու գալ դուրս. » |
| « Oh! » replied the other, | « Էհ՛, » պատասխանեց միւսը, |
| « I am acquitted. » . . | « Ես եմ արձակեալ. » |
| « What defence did you make? » . . . . . . | « Ի՞նչ պաշտպանութիւն ըրիր դու ընել։ » |
| « Why, I told the judge . | « Ինչո՞ւ, ես ըսի դատաւորին |
| that I had brought up the goose . . . . . . . | թէ ես ունէի սնուցած ըզսագը |
| from the time it was a gosling, . . . . . | 'ի ժամանակէն այդ էր մէկ ձագ սագի, |

| | |
|---|---|
| and that I had witnesses to prove it. » . . . | և թէ ես ունէի վկաներ ապացուցանելու զայն։ » |
| « Very good, indeed, » said Paddy, . . . . . . . | « Շատ աղէկ, յիրաւի, ըսաւ Փատի, [1] |
| who was at that moment called . . . . . . . | որ էր յայդ ժամանակ կոչեցեալ |
| into court to take his trial; | յատեանն առնելու իւր քննութիւնը․ |
| « stay a short time for me, | « կեցիր մէկ կարճ ժամանակ վասն իմ |
| I shall soon be acquitted. » | ես պիտի շուտ մը ըլլամ արձակեալ։ » |
| He was then conducted to the bar, . . . . | Ինքը եղաւ այն ատեն տարուած ցանկապատը, |
| the accusation was read, | ամբաստանութիւնը եղաւ կարդացուած, |
| and the judge asked him what he had to say in his defence. . . . . . | և դատաւորը հարցուց անոր ինչ ինքը ունէր ըսելու յիւր պաշտպանութիւն։ |
| « My lord, » replied the Irishman, . . . . | « Իմ տէրս, » պատասխանեց Իրլանտացին, |
| « I have brought up that gun . . . . . . . . | « ես ունիմ սնուցած այդ հրացանը |
| ever since it was a pistol, | յորմէ հետէ այդ էր մէկ ատրճանակ, |
| and I can bring witnesses to prove it. » . . . . | և ես կրնամ բերել վկաներ ապացուցանելու զայդ։ » |
| The judge, however, and the jury . . . . . | Դատաւորը, սակայն, և ատենակալք |
| were not sufficiently credulous, . . . . . | էին ոչ բաւականապէս դիւրահաւատ, |
| and poor Paddy was . . | և խեղճ Փատի եղաւ |
| condemned to be transported. . . . . . | դատապարտեալ ըլլալ արտասահմանեալ։ |

## Հայերէն թարգմանութիւն։

Իրլանտացիին մէկը՝ որ հրացան մը գողցած ըլլալու ամբաստանուած էր, բանտուեցաւ ու դատաստանի տարուե-

1 Սովորական անուն մը առ Իրլանտացիս։

ցաւ։ Դատին օրը մինչդեռ մտածելու հետ էր թէ ինչպէս պաշտպանէր պիտի ինքզինքը դատաւորաց առջին, իրեն բանտարկեալ ընկեր մը տեսաւ որ սագի մը գողութեանը համար դատեալ՝ ատեանէն կը դառնար։ — «Ուրեմն, կանչեց Իրլանտացին, ինչպէս յաջողեցուցիր։ — Է՜հ, պատասխանեց միւսը, ես արձըկուեցայ։ — Ի՞նչ պաշտպանութիւն ըրիր քեզի։ — Հէ, ըսի դատաւորին թէ ես սնուցած էի զսագը իր պզտիկութենէն 'ի վեր, և թէ վկաներ ունէի այդ բանը ապացուցանելու։ — Շա՛տ աղէկ, յիրաւի, ըսաւ Իրլանտացին, որ մի և նոյն ատեն ատեան կանչուեցաւ քննուելու. — քիչ մը ինծի սպասէ, շուտ մը ես ալ կ'արձըկուիմ»։

Անմիջապէս զինքը դատաստանարանին ցանկապատը տարին, և ամբաստանութիւնը կարդացուելով՝ դատաւորը հարցուց իրեն թէ ինչ ունէր ըսելու 'ի պաշտպանութիւն անձին։ — «Տէր դատաւոր, պատասխանեց Իրլանտացին, ես սնուցեր եմ զայդ հրացան յորմէ հետէ ատրճանակ մըն էր, և կրնամ վկաներ բերել զայդ ապացուցանելու»։ — Սակայն դատաւորը և ատենակալք անանկ հեշտեաւ դիւրահաւատ չգտնուեցան, ու խեղճ Իրլանտացին դատապարտուեցաւ արտաքսման ըլլալու։

### Խօսակցութիւն։

Who was accused of having stolen a gun? — Where was he brought to? — On what was he reflecting on the day of trial? — Why was one of his fellow-prisoners tried? — How did he come off? — What defence did he make? — What did Paddy say on hearing this? — What did he say when he was conducted to the bar? — Were the judge and jury credulous?

## Ընտանեկան խօսակցութիւն։

| ՃԱՇԱՏՕՒՆԸ։ | AN EATING-HOUSE. |
|---|---|
| Կրնա՞ք ըսել ինծի, օրիորդ Ֆէլթըն, ամսուն քանի՞ն է։ | Can you tell me, Miss Felton, what day of the month it is? |
| Յունիսի 29 է. և այսօր մեր բարեկամը, Օրիորդն Միրիէմ Փարսընս, ամուսնանայ պիտի Տոքդոր Հէյին հետ։ | It is the 29th of June; and today our friend, Miss Miriam Parsons, is going to be married to Dr. Hay. |
| Ինծի մեծ ուրախութիւն է այդ բանը։ Մեզի ուրեմն պատշաճ է մէկտեղ ճաշել և իրենց քաջողջութեանը բաժակ մը քամել։ | How glad I am! Then we must dine together and drink to their health. |
| Շա՛տ աղէկ է ըսածնիդ. ուրեմն կ'ուզէք տո՞ւնը ճաշել թէ ճաշատուն մը երթալ։ | Very well; and would you like to dine at home or at some eating-house? |
| Ինծի կ'երևի թէ լաւագոյն է Երջանիկ կղզին երթալ ու հո՛ն Քրա՛ուն ճաշատունը ճաշել։ | I think we had better go to Happy Island and dine at the Crown. |
| Շատ աղէկ կ'ընենք. օրն ալ արդէն շատ գեղեցիկ է. հա՛պա երթանք։ | That will be very nice. It is such a beautiful day. Let us go then. |
| Սպասաւոր, կ'ուզենք ճաշել։ | Waiter, we want to dine. |
| Շատ աղէկ, Պարոններ. սրա՞հը կ'ուզէք ճաշել թէ առանձին սենեակ։ | Very well gentlemen. Do you wish to dine in the saloon, or in a private room? |
| Խնդրեմ, հարցուր Ստէրնս օրիորդաց։ | Please ask the Misses Stearns. |
| Տար զմեզ առանձին սենեակ. աւելի հանդիստ կ'ըլլանք հոն։ | Show us into a private room; we shall be quieter there. |
| Շնորհք ըրէք, ելէք սա սանդուղէն վեր առաջին դստիկոնը։ | Please to go up to the first floor by this staircase. |

| | |
|---|---|
| Սպասաւոր, այս սփռոցը մաքուր չէ։ | Waiter, this cloth is not clean. |
| Հիմայ ուրիշ մը կը բերեմ։ | I will bring you another. |
| Միւս սեղանին վրայ պատրաստէ։ | Lay the cloth on the other table. |
| Կերակրոց ցուցակը բեր մեզի։ | Bring the bill of fare. |
| Ահաւասիկ, Պարոններ։ | Here it is, gentlemen. |
| Մեզի ապուր բեր ու թարմ հաց։ | Give us some soup, and some new bread. |
| Ի՞նչ գինի կը հրամմէք տիկնայք։ | What wine do you wish to have, ladies? |
| Ճշդիւ նոյնը ինչ որ տուիր Պէսի Մօր հօրեղբօրորդւոյս։ | Just the same as you gave to my cousin Bessie Moore. |
| Սե՞ գինի։ | Red wine? |
| Ոչ, Ճերմակ գինի։ | No, white wine. |
| Թարմ ձուկ ունի՞ս։ | Have you any fresh fish? |
| Հիմա բերին։ | It is just arrived. |
| Սպասաւոր, տուր Սդօճըրճիս տիկնոջ մաքուր պնակ մը, և Ալիս օրիորդին մաքուր անձեռոց մը։ | Waiter, give Mrs. Sturgis a clean plate, and Miss Alice a clean napkin. |
| Խցահան մը ունի՞ս։ | Have you a corkscrew there? |
| Շիշին խիցը հանած է։ | The bottle is uncorked. |
| Սպասաւոր, հոս մեզի մօտ դիր քանի մը պնակ, շիշերն ու գաւաթները․ մենք կ՚առնունք։ | Waiter, put some plates, bottles, and glasses near us; we will help ourselves. |
| Ընդեղէն կը հրամմէ՞ք, ծաղկակաղամբ, կամ կանաչ ոլոռն։ | Will you have any vegetables? Some cauliflowers, or green peas? |
| Հարրիս տիկնոջ քիչ մը ծնեբեկ տուր։ | Give Mrs. Harris some asparagus. |
| Կարագը կարելի եղածին չափ թարմ ըլլայ։ | Let the butter be as fresh as possible. |
| Մեզի քիչ մը եզան միս բեր սունկերով, ու խորոված հաւ մը։ | Bring us some beef with mushrooms, and a roast chicken. |
| Քիչ մըն ալ որսի միսեղէն կ՚ուզենք։ | We want some game also. |

| | |
|---|---|
| Այս ձէթը կծու կը հոտի։ | This oil smells strong. |
| Պարոնայք, Գաղղիոյ ձէթ է առիկայ։ | Gentlemen, this is French oil. |
| Կարելի է, սակայն հայրենիքը շատոնցուընէ թողած է։ | It is possible; but it left its country long ago. |
| Տուր մեզի, դեղձ, թուզ, ելակ և ընկոյզ։ | Give us some peaches, figs, strawberries and nuts. |
| Հապա հիմա խմենք նոր հարսնացած զոյգին կենդանութեանը։ | And now let us drink the health of the newly married couple. |
| Կը մաղթենք իրենց երկայն ու երջանիկ կեանք. թող յիշեն երբեմն իրենց բարեկամներն որ ոչ երբեք կը մոռնան զիրենք։ | May they enjoy a long and happy life, and sometimes think of their friends who never forget them. |
| Որոնք և այսօր կը ճաշեն 'ի Քրաուն, փափաքելով մասնակցիլ իրենց երջանկութեանը։ | And who dine today at the Crown wishing to share their happiness. |
| Արդ սեղաննիս լմնցաւ։ | And now the dinner is over. |
| Սպասաւոր, հաշիւը բեր։ | Waiter, bring the bill. |
| Ահա փոքր բան մը քեզի համար։ | Here is something for you. |
| Երթալու ատեննիս հաշուեկալին կը վճարենք։ | We will pay at the bar, when we leave. |

ՎԵՐՋ

# ԱՆԿԱՆՈՆ ԲԱՅՔ

## ԱՆԿԱՆՈՆ ԲԱՅԵՐԸ ԿԸ ԲԱԺՆԵՆՔ ԵՐԿՈՒՔԻ

**Ա. Անոնք որոնց կատարեալը և անցեալ դերբայն մի և նոյն են. ինչպէս։**

| | | | | Կատարեալ և անցեալ դերբայ | |
|---|---|---|---|---|---|
| To abide | դու էպայ՛յտ | բնակիլ | abode | էպօ՛տ | բնակեցայ, բնակած |
| — bend | » պէնտ | ծռել | bent | պէնթ | ծռեցի, ծռած |
| — behold | » պիհօ՛լտ | տեսնալ | beheld | պիհէ՛լտ | տեսայ, տեսած |
| — bereave | » պիրի՛վ | զրկել | bereft | պիրէ՛ֆթ | զրկեցի, զրկեալ |
| — beseech | » պիսի՛չ | պաղատել | besought | պիսօ՛թ | պաղատեցի, պաղատեալ |
| — bind | » պայնտ | կապել | bound | պաու՛նտ | կապեցի, կապեալ |
| — bleed | » պլիտ | արիւն առնել | bled | պլէտ | |
| — breed | » պրիտ | սնուցանել | bred | պրէտ | սնուցի, սնուցեալ |
| — bring | » պրինկ | բերել | brought | պրօթ | բերի, բերած |
| — build | » պիլտ | շինել | built | պիլթ | շինեցի, շինած |
| — buy | » պայ | գնել | bought | պօթ | գնեցի, գնած |
| — burn | » պէօ՛րն | այրել | burnt | պէօ՛րնթ | այրեցի, այրած |
| — burst | » պէօ՛րստ | ճաթիլ | burst | պէօ՛րսթ | ճաթեցայ, ճաթած |
| — cast | » քա՛սթ | նետել | cast | քա՛սթ | նետեցի, նետած |
| — catch | » քէ՛չ | բռնել | caught | քօթ | բռնեցի, բռնած |
| — cling | » քլինկ | կպչիլ | clung | քլէօ՛նկ | կպայ, կպած |
| — cost | » քօսթ | արժել | cost | քօսթ | արժեցի, արժած |

